# ՄՏԱԾՈՒԹԻՒՆՔ

# ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ

## ՀԱՅ. ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑՒՈՅ





ԳՐԵՑ

ԳԻՍԱԿ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Օ. ԾԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ, ԿԱԶՄԱՏՈՒՆ ԵՒ ԹՂԹԱՎԱՃԱՌԱՆՈՑ
Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ
Պայպլ Հաուզ — Կոստանդնուպոլիս

معارف عموميه نظارت جليله‌سنك ١٨ شعبان ٣١٨ و ٢٨ تشرين ثانى
٣١٦ تاريخلى و ٣٧٧ نومرولى رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Խաչին «քարոզութեան յիմարութիւն»ը , որ «Աստու-
ոյ իմաստութիւն»ն է , ոմանց համար տակաւին դադրած
է «յիմարութիւն» ըլլալէ : Ժամանակը փոխած չէ ահա-
ին տարբերութիւնը , որ կայ ընդ մէջ աշխարհի եւ
րիստոսի ոգիին : Նայելով մարմնաւոր մտքի տեսակէ-
էն՝ Աւետարանին յայտնած կրօնքը տարօրինակութիւն է :
շխարհի սովորական «լայն ճամբէն» գացող բազմու-
թեան առաջ Քրիստոս կ'ցցուի իբր «գայթակղութեան
ար» : Անոնք բերաններ թուքին խաչին վրայ . միեւ-
ոյն արհամարհանքի անպատկառ ոգին կ'շարունակէ
որձել մարդոց մէջ ընդդէմ խաչի քարոզութեան :

Աւետարանի քարոզութիւնը այնքան տարօրինակու-
թիւններ կ'պարունակէ իր մէջ , որ գերբնական ըլլալ
էտք է այն , կամ բոլորովին յիմարական : Այնքան հո-
ւոր է այն , ու այնքան գերմարմնային , զոր «շնչա-
ր մարդ»ը չի կրնար ընդունիլ : Անիկա սուրբ կեանք
պահանջէ , եւ սուրբ կեանքը երեւոյթ մ'է , զոր աշ-
արհ չի կրնար ըմբռնել : Անիկա կ'պահանջէ հաւատք ,
տեսութիւնն է աներեւոյթ բաներու , — տեսնե՛լ չի
սնուած բաները , յիմարութիւն է անոր — աշխարհին:

Գ

Աւետարանի քարոզութիւնը Քրիստոսի քարոզութիւնն է — քարոզութիւն՝ որ իր Քարոզչին, իր Հեղինակին նման տարօրինակ կամ, եթէ կ'ուզէք, արտակեդրոն բան մ'է : Աշխարհի բովանդակ մարդոց կեանքին կեդրոնն ու առանցքը մէկ բան էր. — «Ես»ը. — փառաւորել անձը եւ գոհացնել զայն : Այլ այս նոր, անօրինակ, անսովոր քարոզութիւնը մարդկային կեանքի դրութիւնը փոխեց, Աստուած դրաւ հոն, իր սեփական տեղը, — այսքան արմատական էր փոփոխութիւնը :

Աշխարհ կ'քարոզէր. տեսանելի իրերը, Աւետարանը քարոզեց թէ «Երեւցած բաները ժամանակաւոր են, չերեւցած բաները՝ յաւիտենական» : Աշխարհ կ'ուսուցանէր թէ առնելն է իմաստութիւն : Այլ Աւետարանը հռչակեց թէ «Լաւ է տալ քան առնուլ» :

Աւետարանի քարոզութիւններէն մէկ քանին բացարձակապէս պատրանք էին աշխարհի համար, զոր օրինակ, «Ով որ իր անձը կ'կորսնցնէ, պիտի գտնէ զանիկա, եւ ով որ կ'գտնէ, պիտի կորսնցնէ» — կեանք գտնելու համար կորսնցնե՛լ զայն, ցնորք չէ՞, երազ չէ՞ այս : Կոյր աշխարհն անհրաժեշտ էր որ պիտի խնդար թէ՛ քարոզին վրայ, թէ՛ Քարոզողին վրայ :

Քրիստոնէութիւնը քարոզեց «ճշմարտութիւն»ը, եւ աշխարհ ըսաւ — «Զի՞նչ է ճշմարտութիւն» : Անիկա քարոզեց «արդարութիւնը, լոյսը, սէրը, կեանքը», եւ աշխարհ հարցուց — «Ո՞րն է արդարութիւնը, ի՞նչ է կեանքը» : Ու ի՞նչ կ'ուզէք որ պատասխանէր Աւետարանը : Աշխարհ կ'ակնկալէր որ իմաստասիրական, բնազանցական, գիտական, բոլոր փիլիսոփաներու դպրոցներէն ընդունուած մեթոդներով յագեցուցիչ պատասխան մը տրուէր իրեն : Սակայն Յիսուս, Աւետարանին Յիսուսը, տուաւ ապշեցուցիչ պատասխան մը — «Ես եմ ճամբան, ճշմարտութիւնը եւ կեանքը» : «ԵՍ», ահա

պատասխանը Անոր ։ Ի՞նչպէս գիտնամ հանդերձեալ կեանքը , ի՞նչ է անմահութիւնը , ի՞նչպէս կ՚ըլլայ մեռելոց յարութիւնը — «Զի՞արդ յառնեն մեռեալք» ։ Ի պատասխանի այս հարցմանց , կ՚ըսէ Ան — «ԵՍ իսկ եմ յարութիւն եւ կեանք , որ հաւատայ յիս , թէպէտ եւ մեռանի՝ կեցցէ» ։ «Հաւատա՞ս այսմիկ» . կ՚հաւատա՞ս ասոր ։ Աշխարհ կ՚ըսէ , «Ոչ , մոլեգնեալ է դա» ։

Ի՞նչ որ ալ ըլլայ , սակայն , աշխարհի դատաստանը այս զարմանալի ճառոզութեան մասին , իրողութիւնը կայ ու կ՚մնայ մեր մօտ ։ Ան որ ընդունեց զայն , ան որ ընկերծորէն ըսաւ Անոր — «Այո , Տէր , ես հաւատացի թէ Դու ես Քրիստոսն Որդի Աստուծոյ , որ յաշխարհ գալոց էիր» , այն մարդ ստացաւ «Աստուծոյ փառք»ը ։ Ստացաւ թէ իր սրտին մէջ ծնունդ առաւ նոր կեանք մը՝ տար իր կեանքին , կեանք մը՝ որ իր բոլոր բնութեամբ Աստուծոյ կեանքին կ՚նմանի ։ Նա զգաց թէ «յաւիտենական կեանք»ն է այն ։ Նա *ծնաւ* նոյն կեանքը , ոչ թէ ստացաւ . զի Քրիստոնէութիւնը *կեանք* է՝ ոչ գիտութիւն . ակ կեանքն հաւատքէն է ի Քրիստոս Յիսուս ։

Եւ այս՝ վերացական վարդապետութիւն մը , կամ աստուածաբանական հայեցողութիւն մը չէ՝ զոր պէտք է նդպատճառ դաւանիլ , այլ *իրողութիւն* է այն , ամենէն աստատուն իրողութիւնը Քրիստոնէական կրօնքին մէջ ։ աւատա , ու պիտի ստանես , պիտի յսես , պիտի գիտնաս ։ աւատա, ու պիտի փրկուիս , պիտի ապրիս ։ «Հաւատա» . ուրիշ միջոց մը խոստացուած կամ ընծեռուած չէ ոյն արդիւնքներն յառաջ բերելու համար մարդոց մէջ։

Այն որ հաւատայ, կեանքը կ՚ունենայ ու կ՚հասկնայ— նչ որ չեն հասկնար չի հաւատացողներ — թէ կեանքը ն սորվիր , *կ՚ունենան* , թէ անմահութիւնը *կ՚ապրուի* սնաւանդ՝ ման կ՚ուսումնասիրուի ։ Թէ որ անձնական որձառութիւնը չունիս այս բաներուն , թէ որ չես գի-

տեր Քրիստոսի քարոզած «Երկնից Թագաւորութիւն»ը , հաւատքը մուտ գտած չէ քու ներսիդիդ :

Մարդոց անհատնում «Ինչո՞ւ»ներուն պատասխանը Քրիստոսի՝ — «ԵՍ ԵՄ» է : Այն որ կ'հաւատայ՝ կ'հակնայ , կ'ըմբռնէ , կ'շօշափէ , կ'զգայ , կ'ունենայ , *կ'ըլլայ* : Քրիստոսի պատասխանը անօթի մարդուն այս է — «Ես եմ հաց կենաց» : Իր պատասխանը կոյր մարդուն՝ — «Ես եմ լոյս» . կորսուած մարդուն՝ — «Ես եմ ճամբան» : Ու այն որ կ'հաւատայ , կ'կշտանայ , կ'տեսնէ , կը հասնի փրկութեան , ու ա՛լ պէտք չունենար գիտական կամ փիլիսոփայական բացատրութեանց , որոնք ո՛չ միտքը կ'գոհացնեն , ո՛չ հոգին :

Ահա այս քարոզութիւնն անհասկնալի է ու կ'մնայ անհասկնալի այս «աշխարհի իմաստութեան» : Ուստի միշտ կ'նկատէ զայն իբր «քարոզութեան յիմարութիւն»ը:

Ի՛նչ որ գրեցինք ցարդ «Բիւզանդիոն» պատուական Հայաթերթի մէջ տօնական օրերու առթիւ , ամենն ալ կը վերաբերէին նոյն կարգի քարոզութեանց նոյն ոգիով գրուած , որոնք , ոմանց կողմէ , յաչս որոնց «յիմարութիւն» ըլլալէ չեն դադրած նոյնօրինակ ճշմարտութիւնք , ապահովաբար , արհամարհուեցան , այլ ուրախ ենք ըսել որ , նաեւ , շատերու ընդունելութեան արժանացան: Փա՜ռք է այս մեր Ս. Եկեղեցւոյն :

Մխիթարական երեւոյթ մ'է մեզ համար տեսնել թէ այս տարակուսող , արհամարհող ժամանակիս մէջ պակաս չեն հաւատքի , կրօնքի մարդիկ, մեր տոհմային կրօնասիրութեան կենդանի վկաներ , որոնք Քրիստոնէական ճշմարտութիւններ սիրելու , ընդունելու սիրտ ունին , որոնք այս ապականեալ աշխարհէն զատ հոգեւոր աշխարհի մը ծանօթ են , որոնք կորսնցուցած չեն իրենց լաւագոյն ընդունակութիւններն ու ճաշակը երկնային

յայտնութեանց եւ հոգեկան իրաց, եւ որոնք, վերջապէս, համակցած են թէ այլ բաներ եւս կան, որ կշիռ ու արժէք ունին ոսկիէն զատ, հաճոյքէն ու անունէն զատ :

Այս կարգի ընթերցողներու կողմէ փափաք յայտնուած էր գրքի ձեւով վերստին ի լոյս հանել յիշեալ օրաթերթին միջոցաւ մեր հրատարակած կրօնական յօդուածները : Գերազանցապէս բարի փափաքներ գոհացնելու մեծ հաճոյքով այսօր զանոնք ամէնը, մէկ երկու կտորներու յաւելումով, կրկին կ'ներկայացնենք նոյն սիրելի ընթերցողներուն, որոնց բարոյական օգուտը, հոգեւոր շինութիւնը միայն պիտի ըլլան մեր վարձքը, մեր սրտի գոհունակութիւնը :

ԳԻՍԱԿ



# ՄՏԱԾՈՒԹԻՒՆՔ

# ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ

### ՀԱՅ. ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ

## ԱՄԱՆՈՐԻ ՄՏԱԾՈՒՄՆԵՐ

ԱՐՏԻ ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ *կ'նշանակէ «օրերը համրել», ըստ Աստուածաշունչ Գրքին (Սաղմ. Ղ. 12)։*

*Բարոյական սնանկութիւնը, որ մեծագոյնն է սնանկութեանց, յառաջ կուգայ ժամանակի վատնումով։*

*Աստուած իր կատարած գործերուն համար տարեկան հաշուեկշիռ մը չներկայացներ մեզի, բայց մենք հաշիւ պիտի տանք Իրեն անցելոյն համար։*

*Իր ժամանակը վաճառող մարդը «անմիտ» է. իմաստուն մարդը զայն կ'գնէ։*

*Կեանքին իրական արժէքը ըմբռնել՝ մեծագոյն իմաստութիւնն է։*

*Կեանքը սուղ է, քանզի կարճ է. մեծ է այն, քանզի փոքր է. պատուական է, քանզի վաղանցիկ է։*

*Ծաղիկն այն ատեն յարգուեցաւ, երբ արեւին մէջ ամրեցաւ։ Մարդ յայնժամ սիրեց իր օրը, երբ տեսաւ թէ «Այն կ'երթայ, ու ա՛լ ետ չի դառնար»։ Ըստ Պայրը-*

նի՝ կեանքը յանժամ պաշտուեցաւ, երբ «մեռաւ»ն լսուեցաւ ։

Լաւ ապրելու համար պէտք է ունենալ սա խոր-հուրդը թէ պիտի չապրինք ընդ երկար ։ Մեծ ապրելու համար սա Աստուածային հարցումը ուղղելու ենք մեր անձերուն — «Ի՞նչ է կեանքը» ։

Գրէ կեանքիդ գիրքը որքան լաւ, որքան օգտակար որ կրնաս, քանզի մահու հրեշտակը կուգայ շուտով ու կ'կնքէ զայն ։

Ներկայ կեանքը, սակայն, չէ ամէնը. կեանքին ամ-բողջութիւնը չէ, այլ մի մասն է — փոքրիկ մասը — «կեանք»ին ։

Մահը նիրհումը չէ կեանքին, այլ՝ զարթնումը. Ներ-կայ կեանքն է երազը, իսկ մահը սթափումն է ։ Այս կեանքը սկիզբն է անվախճան կեանքին ։

Մի ցաւիր որ շուտ կ'անցնի այս կեանքը. այն կ'տա-նի ցաւերը շուտով, ու կ'բերէ հանգիստը շուտով ։

Մոռնալու չենք բնաւ թէ մեր կեանքն անստոյգ է — ստուգապէս անստոյգ — որուն ճակտին վրայ կնքուած է սա անջնջելի վճիռը — «Դուն անշուշտ պիտի մեռնիս»։

Կեանքն անդառնալի է. ամէն ինչ որ մեր ետեւ կը ձգենք — գործ, խորհուրդ, խօսք կ'մնան հոն անփո-փոխ ։ Զար իղձ մը, ծուռ ակնարկ մը անգամ չենք կա-րող ետ դարձնել, ոչ ալ ծուռ դրուած քար մը կրնանք տեղէն խախտել — «Գետինը թափուած ջուրը չի ժող-վուիր» ։

Եթէ իմաստուն ես, պատրաստէ կեանքդ հնձող ման-գաղին, գիտնալով որ զայն իր ձեռքին մէջ բռնող մա-հու հրեշտակը դրանդ առջեւ կեցած է ։

Կ'հաւատա՞ս թէ ուրիշ կեանք մ'ալ կայ, կեանք մը՝ որ չի մեռնիր, որ անընդունակ է ապականութեան, ի-րական կեանք մը՝ որ կցուելով քու կեանքիդ՝ մութ

անցեալը կ'պայծառացնէ **թողութեամբ** եւ **շնորհքով**, եւ ապագադ կ'յուսադարդէ այն ճակատագրով, որ իր իսկ ճակատագիրն է։ Օ՛հ, կեանք մը՝ սուրբ, երջանիկ, օրհնեալ — կեանք մը՝ Աստուածական, որ քուկդ պիտի ըլլայ իր բոլոր ճոխութեամբ։ Այս կեանքը կ'գտնուի «ՈՐԴԻՈՑՆ» մէջ։

---

# Ս. ԾՆՈՒՆԴԻ ՄՏԱԾՈՒՄ

«Չի տեսաք զաստղն նորա», ըսին մոգեր, եւ գիշերուան աղջամղջին ու ցերեկուան բոցակէզ արեւին մէջ յառաջացան, կտրեցին, անցան միջոցի ամբաւ հեռաւորութիւնը։ «Անոր աստղ»ը, — լուսածիր հետքերուն **անոր** աստղին կ'հետեւէին մոգերը — իմաստունները. մարդկային իմաստութեան առջեւէն կ'երթար անոր աստղը։ Ուղեկորոյս հէք ճամբորդը, ցամաքին կամ ծովուն վրայ, կ'նայի «անոր» աստղին։ Անյոյս եւ մոլորայած մարդը, ագէտը ու իմաստունը հաւասարապէս կ'կարօտին նոյն գեղալոյս, չողասփիւռ Առաջնորդին — Բեթլեհէմի աստղին։

Մարդ որքան ճամբայ առնէ կեանքի ուղւոյն մէջ, որքան յառաջանայ գիտութեան ծովածաւալ տարածութեանց մէջ, որքան վերելքներ, հոլաթիւ խոյանքներ ընէ մտածումի, խոհերու եւ խոկումներու բարձրութեանց մէջ, նոյնքան պիտի փնտռէ անոր աստղը չընկղմելու, չխորտակուելու համար լայնասփիւռ անձըր-

պետին մէջ, նման նաւապետին, որ ի՜նչքան բացուի, հեռանայ եզերքէն, ա՛յնքան պիտի թողու մեծ ու պզտիկ տուարկաները ցամաքին, ու նոյն իսկ խրոխտապանծ յաւերժական լեռները հեռուներուն, եւ մրրկող անծայրածիր ովկէանին մէջ աչքը պիտի ուղղէ վեր, դէպի անծիր հորիզոնը՝ գտնելու համար Բեւեռի ճերմակ, նշուլագեղ աստղը — «անոր աստղ»ը ։

Ու կ՚քալեն մոգերը. ինչո՞ւ չեն գոհանար **տեսնելով** աստղը ։ Շատեր պիտի կանգ առնէին հոն, ու ըսէին. «Ահա իմ հանգստավայրս», ու նոյն աստղին ոսկի ցոլքերուն ներքեւ պիտի դնէին խոնջեալ գլուխնին ։ Ոչ, իմաստութիւնը դադար չունի. լոյսը տեսնելով չի գոհանար, կ՚հալածէ զայն ։ Իմաստութեան սկիզբը վախճան չունի։ Իմաստութիւնն անյագ է. կ՚լափէ ովկէանը, ու տակաւին կ՚գոչէ. «Ծարաւի՜ եմ» ։ Օ՜հ, իմաստուն հոգին ի՜նչքան մեծ է, տիեզերքը չի կրնար լեցնել, լիացնել զայն. հոն պարապութիւն կայ միշտ, ահեղ, անըմբռնելի դատարկութիւն մը ։ Իմաստութիւնը դժգոհ է այն ատեն՝ երբ գոհ է ։ Իմաստութեան դպրոցը չրջանաւարտ չունի։ Յիմարը կ՚ըսէ. «Ուսումս աւարտեցի», իմաստունը կ՚ըսէ. «Սկսայ». այն որ «Աւարտեցի» կ՚ըսէ, դեռ սկսած չէ։ Արգահատանք այն մարդուն ալ, որ կեանքին համար կ՚ըսէ. «Վերջացաւ», մինչ պարտ էր ըսել. «Սկսաւ» ։ Իմաստունին բերնին մէջ չի կան «վերջ», «վախճան» բառերը ։ Կորէ՛ յոյսդ այն մարդէն որ կ՚ըսէ. «Տեսայ իմ Բեթլեհէմի աստղս», ու հոն կ՚կենայ. շուտ պիտի կորսնցնէ զայն, զի Անոր աստղը գնայուն, յառաջացող աստղ է ։

Պէտք է չուել. ու կ՚չուեն իմաստունները, քանզի աստղը չէ՝ ինչ որ կ՚փնտռեն ։ Ոչ, աստղը կ՚վերաբերի

«Անոր» , կ՚տանի Անոր . — «աստղն Նորա» ։ Ի խնդիր «Նորա» ճամբայ ելած են Արեւելքէն , ու չեն կրնար խորանն կանգնել իջեւանիլ , մինչեւ տեսնեն «Մանուկ Արքայ»ն , անեղ լոյսը , զԻնք , որ յոյժ աւելի պայծառ է քան իր լոյսը , քան իր աստղը ։ Մարդկութիւնը լոյս չունի առանց «Անոր» , թէեւ արեւներն անոր սրտին մէջ թափին ։ Լո՛յս , լո՛յս պիտի աղաղակէ , թէեւ աստղերու մէջ պատի , լոյսի հոսանքներու մէջ իր ոտքերը լուայ , ու երփնազարդ ծիածանն իր պատմուճանն ընէ , չօչափելով, խարխափելով պիտի փնտռէ զՆա՝ քան «զաստղն Նորա»։ Մարդը թափառական է, դադրում չունի․ կեանքը դեգերում մըն է , որոնում մը ճշմարտութեան համար , լուսոյ գիւտ ։ Չի գտներ զայն՝ մինչեւ չփնտռէ զՆա՝ որու՞ն է , կամ որ է ճշմարտութիւնը , լոյսը ։ Կեանքը՝ մարդոց զԱստուած փնտռելն է ։ Սիրտը կ՚նայի վեր եւ ամենուրեք ի խոյզ Անոր ։ Աստղը սահման մը կը դնէ մեր հետախուզութեանց , վերջին կէտը կ՚դնէ մեր հետախուզութեանց , վերջակէտը կ՚դնէ մեր սերտած գրքին մէջ ։ Այլ Բեթլեհէմի աստղը , «Անոր աստղ»ը հորիզոններէ հորիզոն կ՚թռցնէ հոգին , նոր եւ աննունատարած մթնոլորտներ կ՚բանայ անոր առջեւ ։ Երբ կը տեսնենք անոր աստղը, կ՚հարցնենք իսկոյն. «Ո՞վ է Այն, ո՞ւր է Այն , անոնց տէրն՝ որո՞ւնն է Բեթլեհէմի աստղը , որո՞ւնն են աստղերը , հեռակայ լոյսերը բազմադունեան» ։ Նկատէ՛ զանոնք Քրիստոսի աստղերը , Աստուծոյ աշխարհները , Աստուծոյ տիեզերքը . ըրէ՛ նիւթը յատկացեալ «Անոր» , եւ պիտի չհատցնես ճամբադ դէպի զարգացում , դէպի ազնուացում , դէպի բարձրացում ։

Իմ ճամբուս վրայ դէպի հոն , դէպի լուսոյ Աղբիւր , դէպի Բեթլեհէմ կ՚գլորուի սառի ահագին բեկոր մը, աղ, մեծազանգուած սառնակոյտ մը . — «մոգութի՜ւն ,

միտղի՛ք» , կ'բացագանչէ խուլ ձայն մը ։ Կ'ուզէի հաւատալ խորհրդապաշտութեան՝ թէեւ այն նշանակէր աւելորդապաշտութիւն , քան նիւթին ։ Գաղտնիքը մեր բնութեան էական պէտքն է ։ Հոգիս կ'ուզէ գտնել վայր մը , տեղի մը , հիւղակ մը , ուր կ'ննջէ յոյսն , «անպարագրելի»ն, թէպէտ «ի խանձարուրս»։ Կ'ուզեմ հաւատալ խորհուրդին՝ քան խորհրդանշանին , նիւթին ։ Չեմ ուզեր իրերը , այն բաները՝ զորս կրնամ չափել իմ թիզովս , կրնամ կշռել իմ նժարովս , կրնամ հաշուել իմ թուաբանութիւնովս ։ Կ'խնդրեմ անբաւը , անհունը , յաւիտենականը , զԱստուած ։ Անծանօթն , անգիտելին՝ որ , սակայն , կ'յայտնէ ինքզինք հպումովն իմ հոգւոյս ; զոր կ'ճանչնամ իր հայեցումովն իմ կեանքիս ։ Իմ էութեանս անհրաժեշտ պէտքն է Այն ։ Նիւթապաշտը կը տեսնէ իր մարմինին , իր նիւթին աչօք , եւ անկատար են իր տեսութիւնները, իր հայեցողութիւնք ։ Այն չի տեսներ գաղափարականը , զԱնիկա , առ որ կ'ձգէ , կ'մերձեցնէ նիւթը ։ Անիկա կ'տեսնէ երկնից աստղերը , այլ ոչ «Անոր աստղ»ը ։

Աստղը Բեթլեհէմի այրին վրայ . հոն՝ անոր վերեւ կ'շողայ «աստղն Նորա» ։ Այն աստղն աչքն է Անեղին, որ կը հսկէ անթարթ Դաւիթի տանը վրայ , ուր մարդը կը պատսպարուի , ուր ճշմարտութիւնը , արդարութիւնը , խաղաղութիւնը , սէրը , հոգին ու կեանքը կ'պարուրուին ։ Աստեղային աշխարհ մը կայ , որ իր լուսափիւռ թեւերը կ'տարածէ մարդկութեան վրայ , կ'խորհի , կը ծրագրէ անոր համար , կը խօսի անոր հետ ։ «Պուտտայականութի՛ւն» կը մըլտան ոմանք . անձս կ'կառչի , սակայն , այս գաղափարին ։ Լքող անտարբերութիւն , մոռացում , ուրիշ վերնագաւառի մը դէպի մեր մոլորակն, մեր Բեթլեհէմեան այրն ; չի կրնար երբէք ընդունիլ հո-

գիս ։ Միտքս սահմանուած է հակառակիլ այդ անգութ, ջլատիչ, ընկրկող, նուաստացնող վարդապետութեան ։ Այդ լուսափայլ աստղին վառարանին մէջ սիրտը կ'տեսնեմ ինծի անծանօթ՝ այլ ծանօթ Էակին, որ սփոփանաց ցօղեր կ'հոսէ իմ վշտաբեկ հոգւոյս մէջ, որ ճրագներ կը վառէ ու կ'գեղերփնէ ամայի մութ սիրտս ։

Թող ըսէ ինծի Քրիստոնէութիւնը կամ Պուտտայականութիւնը, կրօնքը կամ փիլիսոփայութիւնը թէ անոր աստղը կ'հսկէ իմ վրաս, աստղերուն ու երկինքներուն Աստուածը կ'դիտէ գայթող քայլերս, կ'տեսնէ անկումներս, կ'մտածէ իմ խաւարչտին խորշիս վրայ, թէ ես միայնակ, անտերունչ ու երեսէ ձգուած չեմ իմ մենաւոր հիւղակիս մէջ ; չեմ անօգնական իմ մտածումներու, որոնումներու, կնճիռներու եւ սլացումներու խանձարուրքիս մէջ, թէ անառաջնորդ չեմ իմ կեանքի, փրկութեան, երջանկութեան, անմահութեան, յաւիտենականութեան շաւղիս մէջ, եւ ինքզինքս կը զգամ ազնուացած, բարձրացած, մեծցած, ճոխացած, սրբացած ու հրեշտակացած ։ Օ՜հ, ոչ, երկիրն որբ չէ, մանուկ մը իսկ միայնակ ու լքուած չէ տիեզերքի մէկ անհուն անկիւնի խորքին մէջ ։ Գորովացայտ, մշտաբաց աչք մը անոր գլխուն վրայ սեւեռուած է, բաբախուն, տրոփուն, տաքուկ սիրտ մը կցուած է անոր դողացող լանջքին հետ, աստղ մը հաստատուած է անոր ստուերամած գագաթին վրայ ։ Աստղերու բանաստեղծութիւնն է այս, կրօնքին քերթուածը, երկինքի, լուսոյ աշխարհին յաւիտենական մեղեդին, —«Փա՜ռք ի բարձունս»։ Ո՛վ որ Բեթլեհէմի աստղ մը ունի իր գլխուն վերեւ — երկինքը, երգ մը ունի նաեւ իր բերանը ։

Աստղը չէ Այն, այլ Անոր աստղը, նիւթն ու տիե-

զերքի բովանդակ իրերը չեն Այն, այլ Անորն են ։ Իմաստուն մարդը չէր փնտռեր զանոնք, բայց անոնց միջոցով՝ զԱնիկա ։ Աստղը, ներկայացուցիչ նիւթին, մատնանիշ կ՚ըլլայ բան մը, որ մեծագոյն է, գեր ի վեր է քան զինք ։ «Ես արեւէն մեծ եմ, ըսաւ Փասքալ, զի թէեւ արեւը կրնայ ինյալ վրաս եւ փշրել, ոչնչացնել զիս, բայց ես պիտի ըլլամ գիտակից իմ մահացումիս, մինչ այն, արեւը, պիտի մնայ անգիտակից իր յաղթանակին» ։ Նիւթը չունի խօսք. եթէ ունի՝ երբեք, այս է իր խօսք, — «Ես ցուցամատ մըն եմ միջոցի անհուն տարածութեան մէջ՝ որ ցոյց կուտամ հեռին այն ճամբան, որոյ մէջէն պարտիս քալել, եթէ կ՚ուզես գտնել իրական լոյսը, իրական գեղեցկութիւնը, իրական մեծութիւնը, իրականութիւնը, զԱնիկա» ։ Կրօնքի մը, որ ցոյց կուտայ անոր աստղը ու ոչ զԱնիկա, ըսէք աստղաբաշխական կրօնք, Քաղդէական հաւատք ։ Երեւցած աստղին վրայ այսպէս գրուած է. «Այս է ճամբան ուրիշ գաւառի մը — Բեթլեհէմի. այս է մեկնակէտը, ոչ թէ չուկէտը քու կեանքի ասպարէզին ։ Հանգստավայրը՝ որուն ի խնդիր ճանապարհ ինկած ես, հոս չէ, քիչ մը անդին, մղոն մը կամ մղոններ հեռու ։ Մի՛ տնանար այդ հանգրուանին մէջ, քալէ մինչեւ հոն ուր ես կ՚երթամ արագօրէն ։ Անոր տեղն հանճարը չի գիտեր, իմաստութիւնը կարող չէ գտնել, ոչ իսկ բաց աչքերն երկնից համաստեղութեան ; բայց միայն ես, Անոր աստղն, աստղն Բեթլեհէմի» ։

«Բեթլեհէմի աստղը. ո՞րն է այն. ո՞րն է անոր աստղը, ինչպէս կարելի է ըսել, մինչ անհամար լուսաւորներ կը փայլփլան եթերական տաճարին փաղփուն, փառաշուք գմբէթին ներքեւ, մինչ միլիոնաւոր աշխարհներ կ՚կախուին անոր կապուտագեղ, լուսապայծառ, հրաշարուեստ

ձեղունէն ։ Ո՞րն է աստղը Բեթլեհէմի մանկան.- Իրենք չե՞ն միթէ ամէնքն ալ։ Ամէնքն ալ միեւնոյն լոյսը ցոյց չե՞ն տար. չե՞ն առաջնորդեր նոր կեանքի, նոր ցաւի, նոր երկինքի Բեթլեհէմին ։ Ո՞ր աստղը կ'տանի զմարդ այլ ուրեք, բայց միայն հոն. ամէնքն ալ Բեթլեհէմի առաջնորդներն են ։ Եթէ ուրիշ տեղ կ'հասնին մարդիկ , աստղերէն չեն առաջնորդուիր . Նոյն իսկ իրենք եւ իրենց ուղեցոյցները։ Մարդոց բիրտ, յամառ կամքին ներքեւ մոլորակ մը կրնայ լուսաւորել նոյն իսկ իրենց մոլար ուղին կորստեան։ Չարերն այս կերպով ի կիր կ'արկանեն ոսկելոյս արեւը, հեշտալուր նուագը, սրտի գեղափթիթ ծաղիկը — սէրը ։ Ա՛հ, անոնք նոյն իսկ երկնից փառապսակ աղամանդներով կ'յատակեն խաւարին ու մահուան ճամբան. գոհարազարդ մայթերու վրայ կոխելով կ'երթան անդունդին սեւ դուռը ։

Աչքերս կ'յառեմ վեր եւ վեհաշուք կամարին վրայ շողացող աստղերու բազմաբոյլ, բազմահոյլ փունջերուն մէջ կ'փնտռեմ Բեթլեհէմի աստղը ։ Ո՞րն է այն որ կ'ըսուի «անոր աստղ»ը ։ Նաւաբեկեալ հոգիս փրփրադէզ փոթորկայոյզ ալիքներու վրայ ծփուն՝ կ'փնտռէ այն մշտավառ , լուսափայլ աստղը ։ — Օ՜հ, ցոյց տուէք ինծ, ո՞րն է այն։ Ով մռայլ ամպեր թերահաւատութեանց, զայն մի՛ խլէք իմ կարօտակէզ, անձկայրեաց աչքերէս։ Թողէք որ յստակօրէն տեսնեմ երկնից ողորկ կուրծքին վրայ վառուող նշուլազեղ այն շափիւղայ աստղը, որ աչալուրջ կ'հսկէ վերէն մեղմիկ ու հեզանոյշ, որ կարծես խօսք մը ունի իր հրավառ շրթանց վրայ, եւ որ ցոյց կուտայ ինծ ոսկեփայլ ափունքն երկնից եւ մարգարտեայ դռները փառապանծ անարուեստ պալատին ։

Ահա ձայն մը Նիմփայից երգին պէս գողտրիկ ու

*թոլչական ու նոյն տանն զանգակի մը ղօղանջին պէս բարձրագոչ եւ մեծագանգիւն հեռիէն թուաւ, հնչեց, մնչեց ականջիս,—«Աւասիկ լուսափողփող աստղը Բեթլեհէմի, այն՝ որ կ'առաջնորդէ քեզ դէպ ի անձնուիրութիւն, դէպ ի սպասարկութիւն եւ ծառայութիւն այլոց, դէպ ի բարութիւն, դէպ ի սէր։ Այն աստղն է Մեծ Մանուկին, Քրիստոնէութեան մեծափառ Իշխանին աստղը, որ կ'առաջնորդէ քեզ անձնաւորումին բարւոյն, գեղեցկին եւ վսեմին. կ'տանի քեզ ճշմարտութեան, խաղաղութեան, արդարութեան, սրբութեան, լուսոյ, կեանքի մարմնացումին, մեծութեան, վեհութեան ու բարձրութեան գաղափարականին — չիտակ ԻՐԵՆ» ։*

---

# ՄԵԾ ՊԱՀՔ

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

Մեծ Պահոց առաջին շաբթուն Հայ. Ս. Եկեղեցին իր հաւատարիմ զաւակները կ'հրաւիրէ ապաշխարութեան։ Մեծ Պահքի ամբողջ շրջանին մէջ Ս. Եկեղեցին՝ իր բոլոր ուղղութեամբ, քարոզութիւններով, յորդորներով, խրատականներով, սրտաշարժ երգեցողութեամբ., յուզիչ, հոգեբուղխ աղօթքներով, մաղթանքներով ու սաղմոսերգութեամբ կէտ նպատակի ունի ժողովրդեան մէջ ներքին, հոգեկան փոփոխութիւն մը յառաջ բերել։ Այլ, մանաւորապէս, առաջին շաբաթը Սիոնի դուստրը — Ս. Եկեղեցին — սգացեալ հարսի պէս իր դէմքը կ'սեւասքօղէ, իր զարդերը կ'թողու եւ տրտմութիւնը հագած կ'ներկայանայ իր «Մանկանց» մէջ, որպէս զի մոլորած, նիւթականացած, մեղաց խաբէութեամբ խստացած, ախտացեալ, թշուառ հոգիները դառնան իրենց չար ճամբաներէն, սկսին նոր, բարի, հոգեւոր եւ աստուածահաճոյ կեանքի մը։ Նա, Քրիստոսի Եկեղեցին, բարձրաձայն կ'աղաղակէ, նման Յովհաննու Մկրտչին, որ անապատին մէջ կ'կանչէր, — «Ապաշխարեցէք, զի մերձեալ է արքայութիւն երկնից»։

Է՛հ, այս քաղաքակրթութեան շողշողուն դարուն մէջ ո՛րչափ անախորժ կ'հնչէ սա **ապաշխարութիւն** բառն ալ։ Յովհաննէսի պէս աշխարհուրաց անապատականներու, մենակեացներու, մոլեռանդ, տգէտ, հիւանդ կրօնաւորներու մէկ անձկամիտ վարդապետութիւնը, որ երբէք չի կրնար հաշտուիլ ներկայ դարուս մտքին ու ոգւոյն հետ։ Այսպէս կ'ըսեն ոմանք, որ, յիրաւի կամ յանիրաւի, զայթակղած են կրօնքէն, ու սովոր են արհա-

մարհել ի՞նչ որ Եկեղեցիէն կուգայ, կամ ի՞նչ որ Եկեղեցին կ'ըսէ։ Ամէն ի՛նչ որ կրօնքի անունով կ'ներկայանայ՝ տխմարութիւն է, տկարութիւն է. ո՛չ փիլիսոփայական է, ո՛չ տրամաբանական։ Եկեղեցւոյ ծոցին մէջ լուսաւոր հրեշտակն անգամ սեւ սատանայ կ'երեւի իրենց աչքին։ Մոլի ու մարմնապաշտ մարդիկ, ընդհանրապէս, որոնց հաճոյքը, ցանկութիւնը գոհացնելու անձնական ազատութիւնը այնքան մոլորցուցած, խաւարեցուցած է միտքը, որ յիմար հպարտութեամբ կը կարծեն թէ իրենց փիլիսոփայական բարձր մտածումներուն է որ այսքան խստօրէն կ'դատեն ու թշնամութիւն կ'սնուցանեն կրօնքի ուսումին ու քարոզութեան դէմ։ Գիտնականի հովեր առած՝ ցած, աղտեղի մթնոլորտներու մէջ կ'տապլտկին, այլ կ'կարծեն թէ խորհուրդի, մտածումի, բարոյականի, իմաստասիրութեան վերին սահմանները կ'թեւածեն. ո՜վ խաբէութեան։ Խորապէս կ'ցաւիմ ու միանգամայն կ'խնդամ այն ցուրտ ժպիտին վրայ, որ կարծեցեալ անհաւատի մը շրթունքին վրայ կը ձեւանայ ի դէպ նոյն իսկ կրօնական բառի մը, որպիսին է «ապաշխարութիւն»։ «Ապաշխարութի՜ւն. փիլիսոփայական գրքի մէջ ծանօ՞թ է այն, քաղաքակրթութեան պատմութեան մէջ կ'գտնուի՞, կ'արձանագրուի՞, օրուան թերթերու, հանդէսներու, օրուան գրականութեան մէջ կ'գրուի՞, կ'յիշուի՞։ — Ո՛չ։ Ականջ մի՛ կախեր, անանկ է նէ, հինցած բառ մ'է այն ռամիկներու բառգրքին մէջ մնացած»։

Իրաւ է. երեք բառեր կան, որ օրուան գրականութիւնը իր սահմաններէն վտարել կ'ուզէ, որ իր արձանագրութիւններէն քերելու, հանելու տենդոտ գործունէութիւն մը ցոյց կուտայ։ Այս բառերէն երկուքն են — **ապաշխարութիւն եւ հաւատք**, երկու աչքի փուշեր, որ անոնց հանդիպումը կ'վրդովեն։ Եւ որպէս զի այս նեղա-

ցուցիչ բառերու մշտնջենական խռովքէն ու հալածանքէն ազատին, ինկած են երրորդ բառի մը ետեւէ, զոր ո՛չ գրել եւ ո՛չ բերան առնել կ'ուզեն իսպառ ջնջելու եւ փոշին գետերուն կամ երկնից հովերուն տալու համար։ Այս փորձանք բառն է — «մեղք»։ Եթէ յաջողին այս գլխու ցաւը մէջտեղէն վերցնել անգամ մը, «ապաշխարութիւն»ը, «հաւատք»ը ինքնին կ'մոռցուին, կ'երթան, կ'անհետանան։ Ճշմարիտ է. ապաշխարութիւն եւ հաւատք մեղքին գոյութիւնը կ'ենթադրեն, եւ մեղքը ապաշխարութեան ու հաւատքի անհրաժեշտութիւնը կը զգացնէ։ Իրաւ որ խելացի են այս մարդիկ, վերջապէս։ Ուրեմն, վերցնենք, մոռցնենք «մեղք»ը։ Բայց եկուր, տես որ մեղքն ալ շատ աներես բան է, Չինացի կափամարտիկներէն շատ աւելի անխոցելի։ Որդ մ'է որ բնաւ չի մեռնիր, այլ միքրոպներուն պէս կ'աճի ու կ'բազմանայ խղճին եւ մտքին մէջ անդադրում խածատելով, կրծելով զայն։

Չէ՛, դուք չէք կրնար մոռցնել մեղքը, ողորմելինե՛ր։ Ինչո՞ւ կ'յոգնիք։ Մեղքը Քրիստոս մոռցուց չատոնց։ Նա Իր անձով վեր առաւ մեղքը խաչին վրայ։ Ինչ հարկ այսքան թշնամութիւն, ուրեմն, մեռած մեղքին դէմ. անոր յաղթող թշնամին Քրիստոս Ինք է։

Կ'սխալիք. բառը ջնջելով՝ մեղքին մահաբեր իրողութիւնները չեն ջնջուիր։ Վարակիչ ախտի մը անունը չի յիշելով՝ ցաւը չի դադրիր գոյութենէ մարմնոյն մէջ։ Քրիստոս ձեզի պէս չի խորհեցաւ։ Ան մեղքը սրտին մէջ զարնել ուզեց, զանիկա կեանքին մէջէն, ոչ թէ լեզուաբանութենէն, ջնջել որոշեց եւ յաջողեցաւ Իր մահուամբ։ Հասկցա՞ք. բայց այս պարագան ալ — Քրիստոսի կատարած փրկագործութիւնը — դարձեալ կ'գլորէ անոնց առաջ նոյն գայթակղութեան քարը — հաւատքը։ Ցերեւան կ'բերէ նորէն միեւնոյն խորշելի բառը —

«ապաշխարութիւն» ։ Ուրեմն , վերցնելու է նախ Մեղքը։ Ուրիշ ճար չի կայ ։

Ցորչափ մեղքն իր պատասխանատուութեան արհաւիրքի խորունկ իմաստովը կ'շեշտէ հարկը հաւատքի եւ ապաշխարութեան , մարդիկ չեն կրնար սիրել զայն , կ'ուզեն անտեսել անոր գոյութիւնը ։ Մեղքը սուր ժանիքով բառ մ'է , որոյ ակռան կ'մտնէ կեանքին մէջ , մինչեւ ոսկորը կ'փշրէ ։ Ուստի օրուան աշխարհիկ , ինքնապաշտ գրականութիւնը կ'զբաղի հինաւուրց կրծող որդին ատամները հանել ու թողուլ զայն իր կակուղ , անվնաս լինդերովը միայն ։ Այդ գրականութեան լուսամիտ մշակները , որ «գրող» անուամբ ծանօթ են , կ'հնարեն ամէն տեսակ հեշտօրօր փրազներ , գիտական , արուեստական , գրական նոր նոր դարբնուած , ձուլուած կոկիկ , փայլուն բառեր ։ Ինչպէս . «բարոյական»՝ հոգեւորի տեղ , «ազնիւ», «համեստ»՝ քրիստոնեայի տեղ, «բնութիւն»՝ փոխանակ Արարիչի, եւայլն, եւայլն ։ Վերջապէս՝ «անաղնուութիւն», «յանցապարտութիւն», կամ շատ շատ , «մեղանչում . . . ընկերային կամ հանրային օրէնքին դէմ , անհատական սկզբանց դէմ» , այլ ոչ երբէք Մեղք — մեղք՝ Աստուծոյ դէմ , Աւետարանական իմաստով ։ Ու այս ամէն լեզուական ձեւաբանութիւնները՝ պարզապէս հաշտուելու համար իրենց անձնական խեռ խոտորումներուն , ինքնահաճ , ինքնագեղծ ձըգտումներուն հետ, անվրդով ընթանալու համար կեանքին լայն , դիւր ճամբուն մէջ , «Ոչ» չըսելու համար ցոփ , տիրապետող «ես»ին ի պատասխան ։

Փոխանակ վարակուող հիւանդութիւնը բուժելու սահմանուած բալասանով , անոր ախտաբանական մեղմացուցիչ , ոսկեզօծ բացատրութիւններ գործածելու այլանդակութեան մէջ՝ օրուան փիլիսոփայութիւնն ալ իր բաժինն ունի ։

Այս յետամնաց փիլիսոփայութիւնը կ'քարոզէ թէ մեղք ըսուած բանը պարզապէս արդիւնք է անկատար գիտութեան, կամ, ուրիշ բառով, տգիտութեան։ Հետեւաբար, ըստ այս վարդապետութեան, մարդը պատասխանատուութենէ, խղճի բեռէ ազատ է։ Սո՛ւտ է։ Այս տեսութիւն իր դղեակը կառուցած չէ մարդկային փորձառութեան եւ կեանքի յայտնի իրողութեանց հաստատ հիմերուն վրայ։ Տգիտութի՞ւն, պատճա՞ռ մեղաց։ Բայց ո՞վ կրնայ ուրանալ թէ ո՛ւր որ տգիտութիւն կայ՝ հոն մեղքի գիտակցութիւն չի կայ։ Մեղք ըսել՝ գիտնալ ըսել է։ Տգիտութիւնը «մեղք»ը չարտասաներ, չի գիտեր։ Ամենահին մարդիկը «բարւոյ եւ չարի գիտութեան ծառ» կոչեցին, ինչ որ ծանօթ է այժմ մեզ անուամբ։ Մեղքի զգայումը կ'ենթադրէ գիտութիւն, ճանաչում մեղքի չարիքին եւ պատասխանատուութեան։ Հոգիին վրայ քսուած սեւ բիծերը տեսնել, սրտի տգեղութիւնը նկատել ի՞նչ կ'նշանակէ, բայց եթէ աչք, լոյս ունենալ։ Երբ մէկը կ'ըսէ, «Տգիտութեամբ գործեցի», նա խղճի խայթ չզգար, մեղքը ոյժ չունի վրան։ Մեղքը գիտութիւնն ծնած է, եւ անոր մէջ նուազ չի ճարակիր։

Ուրիշ դպրոց մ'ալ կը վճռէ թէ մեղքն անխուսափելի է, անճողոպրելի՝ ցորչափ մարդ կապակցուած, խառնուած է զգայական կազմութեան մը — մարմինին հետ։ Հէք մարդն ի՞նչ ընէ, քանի որ անկարող է ինքզինք ազատել մարմինի բանտէն, որուն մէջ կ'հեծէ կիրքերու շղթայումներով։ Յուսահա՛տ փիլիսոփայութիւն։ Ուրեմն յոյս չի կայ մարդուն ազնուացումին։ Ուրեմն յաւիտենապէս կորսուած է նա մարմինի դժոխքին մէջ, ուր նետուած է ծնած օրէն։

Մեղքը վերագրել ուղղակի մարմինի դրութեա՛ն. աղւոր փիլիսոփայութիւն, բայց, դժբաղդաբար, անճիշտ։ Եթէ հնար ըլլար որ այսօր մեր մարմինները զատուէին

իմացական էակէն, ու մնար միայն հոգեղէն մարդը — մարդը առանց մարմինի — ո՞ւր պիտի մնար մեղքը։ Կ՚հարցնեմ, Ուր պիտի երթար նախանձը, ատելութիւնը, կեղծիքը, ինքնասիրութիւնը, հպարտութիւնը, փառամոլութիւնը։ Մարդուն ո՞ր մասին մէջ պիտի մնար խորհուրդը, փափաքը, զգացումը, սէրը, կամքը։ Մարդը մարմի՞նն է։ Հոգին չէ՞ որ կ՚հրամայէ, ու մարմինը անոր հնազանդ ծառան չէ՞, որուն կ՚վերագրուի մեղքը, եւ որ կ՚նկատուի աղբիւրն ու բղխումը մեղքին։

Այլ իմ անմիջական պէտքս ազատումն է մեղաց գերութենէն, մեծաշուք փիլիսոփաներ։ Ես չարը կ՚գործեմ, չարը՝ որուն աղէտները, աւերումները կ՚զգամ իմ ներսի դիս. ի՞նչ ընեմ։ Այս փայլուն մտածումները, վերացումները, այդ շողշողուն բնազանցութիւններն ու հայեցողութիւնները չեն կրնար գոհացում տալ ամօթապարտ ու վիրաւորեալ հոգիիս՝ որ արդարութեան երեսէն կ՚փախչի դրախտի օրինազանց ամոլին պէս, ու կ՚ուզէ ծածկուիլ տերեւախիտ ծառերու նսեմ ստուերներուն մէջ։

Ի՛նչ որ, սակայն, արդի գրականութիւնը կամ փիլիսոփայութիւնը կ՚ուզէ արտաքսել, ջնջել իր սահմաններէն, Քրիստոնէական գրականութիւնը կ՚պահէ, կ՚ամբացնէ, կ՚խորունկցնէ իր ծոցին մէջ։ Հին Գրքին մէջ չքմեղանքի, արդարացումի շպար չի կայ ամենեւին մեղքով արատուած դէմքերուն համար։ Ան բժիշկ մ՚է, որ չի խաբեր, չի գործածեր լեզուագիտական ծամածուռ դարձուածքներ, քնքուշ ոճեր ու բացատրութիւններ։ Կ՚գործածէ բուն բառը՝ զոր կ՚հասկնամ — մե՛ղք։ Կ՚ըսէ ան, — «Մեղքը կ՚բնակի քու մէջ, դուն անոր ասպընջականողը եղեր ես, անոր հլու ծառան»։ «Դուն, կ՚ըսէ Գիրքը, դուն մեռած ես մեղքին մէջ, թէ պատասխանատու ճանչնաս քեզ թէ ոչ, բայց մեղքը պիտի ուտէ

գլուխդ , պիտի կորսուիս . մեղքը մահ է ։ Մարդ չապրիր, կեանք չունի մեղքով, կամ մեղքին մէջ։ Ի՛նչ որ կեանք կ՚կոչես, իրապէս մեռելութիւն է» ։ Կ՚ըսէ նաեւ այդ հին գրականութեան , հին փիլիսոփայութեան մեծ հեղինակութիւնը , — կ՚ըսէ ի փրկութիւն , ի դարման իմ յուսահատ վիճակիս , «հաւատա ու ապաշխարէ» ։ Ապաշխարութի՜ւն ։

Բայց հարկ չի կայ այսքան ցնցուելու , դող ելլելու ի լուր այս ձայնին — «ապաշխարութիւն» ։ Միայն Եկեղեցւոյ, միայն Աստուածաշունչի կամ աստուածաբանութեան յատուկ բառ չէ այն ։ «Ապաշխարեցէք»ը քաղաքակրթութիւնն ալ աղաղակած է դարերու հոլովումներուն եւ աշխարհի յառաջացումի, զարգացումի շրջաններուն մէջ ։ Մի կարծեր թէ կրօնքի քարոզիչն է միայն որ այդ սոսկ հին մատենագրութեան մը մէջ սահմանափակուած բառը կ՚գործածէ այնքան սեղմ մտօք՝ պարզապէս մոլեռանդական ինքնագրգռումով մը։ Ի՜նչ կ՚ուզենք ըսել «ապաշխարէ» ըսելով , բայց եթէ այս , — փոխէ դիտաւորութիւնդ , փոխէ ունայն խորհուրդներդ , ծռած ես՝ մոլորած ես՝ ուղղէ գնացքդ , սխալ ճամբու մէջ ես՝ դարձիր , ետ դարձիր ։ Աշխարհի ո՞ր ապարէզին , արուեստից ո՞ր ճիւղին , յառաջդիմական կեանքի ո՞ր շաւղին մէջ չես լսեր նոյն աղաղակը — «ապաշխարէ՜» , թէեւ այլ բառերով ։ Ապաշխարութիւնը դարձ մ՚է սխալէն շիտակը . ծուռէն ուղիղը , վնասակարէն օգտակարը, յոռիէն լաւագոյնը , չարէն բարին , երեւցած բաներէն անտեսանելին , արտաքինէն ներքինը , գործքերէն հաւատքը , մարմնաւորէն հոգեւորը , ժամանակաւորէն յաւիտենականը , երկրաւորէն երկնայինը , մահէն կեանքը։ Ապաշխարութիւնը սրբագրութիւն մ՚է կեանքի գրքին մէջ սպրդուած վտանգաւոր բարոյական վրիպակներուն , սխալումներուն ։ Դարմանում մ՚է գործուած հոգեկան

չարիքներու։ Ո՞ր գիտութիւնը, ո՞ր փիլիսոփայութիւնը, ո՞ր մէթոտը, ո՞ր դրութիւնը չունի այս յետադարձները, այս բարեփոխումները։ Կրօնքի շրջանակին մէջ տարբեր իմաստ մը չունի։ Ապաշխարող մարդը կ՚տեսնէ իր վէրքին խորութիւնը, կ՚տեսնէ իր գործած զեղծումներուն հետեւանքները, կ՚տեսնէ իր ձեռքով փորած գերեզմանին մթութիւնը. կ՚ըմբռնէ իր բարոյական անկումին անյատակ խորունկութիւնը, կ՚զգայ իր թանկագին ձիրքերուն մահացումը, իր իմացական ու հոգեկան կարողութեանց փճացումը, կ՚հասկնայ անգին, անմահ, անվերջ էութեան մը տարապարտուց վաճառումը չնչին գնով։ Ու, ահա, ցաւը խիղճին կը յայտնէ, կ՚արիւնի սիրտը, կուլայ դառնագին, կորչէ եւ կ՚սկսի հաստատ քայլեր առնել ուղիղ ճամբուն մէջ։ Այս է ապաշխարութիւնը։

Նա՝ ապաշխարող մարդը, սակայն, կեղծ արցունքներ չէր թափեր, ինքնաչարչար միջոցներու դիմում չըներ. մեղքին գործած նախճիրները արտասուքներով լուալ չէր մտաբերեր։ Ինքզինք փրկելու եւ ինք իր աստուածը դառնալու հեթանոսական ոգիով չէր վարուիր, այլ խոնարհ սրտով անցեալոյն համար ներում կ՚խնդրէ Անկէ, որ իշխանութիւն ունի թողութիւն տալ, որ կարող է ըսել, «Թողեալ լիցին մեղք քո», եւ ներկային ու ապագային համար առանց երբէք վստահելու իր անձին, իր բարոյական կորովին, իր բարի որոշումներուն, առանց հաւատ ընծայելու իրեն, կ՚վստահի, կ՚յուսայ Անոր, որ կրնայ օգնել իրեն մեղքին յարձակմանց դէմ, — քանզի Քրիստոս մեր անցեալոյն Փրկիչը չէ միայն, այլ եւ ներկային ու ապագային. Քրիստոս միշտ մեր Փրկիչն է։ Նա ամէն օր մեր զղջումի արցունքը կ՚սրբէ, ամէն օր մեր հոգւոյն վրայ ընդունած վէրքերը կ՚պատէ։ Ան մեր տիեզերքը կ՚ըլլայ. Անոր մէջ կ՚շարժինք, Անոր մէջ

կ'շրջինք ու կ'շնչենք։ Այս կերպով մեր բարոյական դիրքը կ'փոխենք. մեղքի ու սատանայի թեւարկութենէն կ'անցնինք Աստուծոյ կողմը։ Այս է ճշմարիտ ապաշխարութիւնը, որ, նաեւ, կ'կոչուի Քրիստոնէական ապաշխարութիւն եւ կ'յաջորդէ հաւատքին։

Սխալ է կարծել թէ ապաշխարութիւնը վիճակ մ'է տեւական տրտմութեան եւ դառն սուգի։ Ապաշխարող մարդը ցվերջ չի մնար ծունկի վրայ բեկեալ, ջախջախեալ սրտով։ Ցովհաննէս, ամենէն խստակրօն քարոզիչը, որուն վրայ Աւետարանի լոյսին նշոյլը միայն ծագած էր, նա ոչ միայն ըսաւ, «Ապաշխարեցէք», այլ նաեւ յաւելեց, «Զի մերձեալ է արքայութիւն երկնից»։ Երկնից արքայութիւնը այնքան մօտ է կոտրած սրտին։ Ապաշխարութիւնը ցաւի զգացում մ'է, որ առաջ կ'բերէ կատարեալ ուրախութիւն. կարճատեւ գիշեր մը՝ որուն շուտ կ'յաջորդէ պայծառ լուսաւոր այգ մը անվերջ։ Մի դատապարտէք Աստուծոյ Աւետարանը իբր խիստ, դառն, հրամայող, ահաբեկող գիրք, որ միայն գիտէ ըսել, «Ապաշխարեցէք»։ Ամբողջութեամբ կարդացէք զայն։ Ցառաջ տարէք ընթերցումը եւ պիտի լսէք քաղցրահնչիւն, ցնծաւէտ ձայնը — «Զի մերձեալ է արքայութիւն երկնից»։ Խաբուած են անոնք, որ կ'կարծեն թէ Քրիստոնէութիւնը ապաշխարանքի կեանք է, որ կ'ըսեն թէ «Աւետարանը շատ շատ անստոյգ հանդերձեալի մը խոստումը ունի»։ Անոնք Աւետարանի մէկ էջը միայն կ'կարդան, անոր յայտնած կրօնքին մէկ երեսը միայն կ'լսեն, Քրիստոնէութեան նուագին մէկ ձայնը, մէկ խաղը միայն կ'լսեն։ Չեն գիտեր որ «երկնից արքայութիւն»ը, իր բոլոր փառքով, անկեղծ զղջացողի հոգւոյն մէջ կ'սկսի — «Արքայութիւն երկնից ի ներքս ի ձեզ է»։ Չեն կրնար հասկնալ թէ անմահ, յաւիտենական կեանքն ալ հիմա եւ հոս ճշմարիտ հաւատացեալի մը

անձին մէջ ծագում կ'առնէ, որուն վրայ մահը տիրապէս չիշխեր։

Կրօնքին մէջ ոչինչ այնքան կեղծ երեւոյթներով կը ներկայանայ քան ապաշխարութիւնը։ Ճշմարտանման ապաշխարութիւն կայ որ ճշմարիտ չէ, ու ենթական խաբուած է չարաչար։ Ճշմարիտ ապաշխարութիւնը, որ յառաջ կ'բերէ ոչ միայն մեղաց թողութիւնը, այլ եւ ազնուացած, փրկուած կեանքը, Քրիստոնէական կեանքը, ճշմարիտ կեանքը, որ «ապաշխարութեան արժանի» պտուղ կ'բերէ, անմիջապէս վերջը կուգայ հաւատքէն ի Քրիստոս Յիսուս։ Ըմբռնելու համար սոյն ճշմարտութիւնը՝ պէտք է ուշադրութեամբ հետեւիլ հետագայ դիտողութեանց. —

1. Ճշմարիտ ապաշխարող մը մեղքը կը նկատէ **իրեն**։ Անիկա մեղքը չի վերագրեր փորձիչ պարագաներուն։ Շատեր յանցաւոր կ'հանեն սատանան, Ադամը, ընկերութիւնը, միջավայրը, իրենց բնութիւնը, որպէս թէ այն — բնաւորութիւնը — մասը չէ իրենց անձին։ Անկեղծ է ապաշխարող մը երբ կ'ըսէ, « **իմ** մեղքս », «**ես** մեղանչեցի ». «**իմ** մեղքս միշտ իմ աչքիս առջին է»։ Երբ խիղճն առողջ է, ու չէ բթացած, չէ կուրացած, այս է անոր զգացումը։ Ամենէն վտանգաւոր վիճակն է մեզմէ դուրս առարկայի մը վրայ նշմարել ոեւէ հիւանդութիւն, որոյ մանրէները **մեր** մէջ կ'սնանին։ Այս պարագային իրական ապաշխարութիւն անհնար է։

2. Անկեղծօրէն ապաշխարող մը մեղքը կ'նկատէ **Աստուծոյ դէմ** : Հաւատացեալ սրտի մը խոստովանութիւնը, հաւատով լուսաւորուած խղճի մը դատաստանը այս է, — **Քեզի**, միայն **Քեզի** դէմ մեղանչեցի »։ «**Քեզ** միայն մեղայ, **Տէր**, եւ չար առաջի **քու** արարի »։ Մեղ-

քէն զգուող, սաստիկ զգածուած հոգիի մը արտայայտութիւն է այս ։ Սուտ զղջում մը կայ , որ կրնայ կոչուիլ անձնասիրական ։ Նա որ ցաւ կ'զգայ, մինչեւ իսկ արցունք կ'թափէ , քանզի մեղքին մէկ դառն պտուղը ճաշակած է, քանզի իր դիրքը կորսնցուցած է, կամ, քանզի իր արժանապատուութեան դէմ մեղանչած է, վասն զի յանցանքի մէջ ինկալով տկար, հիւանդ կամքի մը ու անհաստատ բնութեան ապացոյցը տուած է, խաբուած ապաշխարող մ'է այն։ Ան թող գիտնայ որ սուտ կ'խօսի ըսելով,— «Քեզ միայն մեղայ» . «Քեզի դէմ մեղանչեցի» ։ Պէտք էր աղօթել յաւէտ , «Ինծի, միայն ինծի դէմ մեղանչեցի» , որ է սատանի աղօթքը ։ Ապաշխարութիւն մը , որ , Տէր Յիսուսի վրայ ճշմարիտ հաւատքով մը , ինքնայանձնումով մը , կ'սկսի, անծանօթ է այս գաղափարին ։ Ոեւէ ապաշխարութիւն , որ զուրկ է այս հանգամանքէն, աշխարհի հոգիէն է եւ ոչ Քրիստոսի շնորհքէն։

Պետրոսի ապաշխարութիւնը ճշմարիտ էր , եւ փրկութիւն գործեց . զի անոր սկիզբը Քրիստոսի ակնարկէն էր —«Եւ Տէրը դարձաւ ու Պետրոսի նայեցաւ» ։ Ու Պետրոսի սիրտը հալեցաւ իսկոյն։

Պետրոս մեղքը իրեն դէմ, իր առաքելական պատուոյն, իր պաշտօնին կամ դիրքին ընդդէմ գործուած չզգաց, այլ տեսաւ թէ մեղաց Նէտը Վարդապետին սրտին ուղղած ու ծակած էր զայն, ճիշտ այն ատեն՝ որ դեռ Անոր սիրտը տաք կրակ էր նոյն իսկ Թուքերու եւ հարուածներու տարափին տակ, նոյն իսկ իր յանդուգն ուրացումին հանդէպ։ Քրիստոսի ակնարկն այս բանը յիշեցուց , եւ Պետրոսը դառնապէս լացուց։ Ամէն ատոր նման ապաշխարողի կրնայ ըսուիլ թէ «Տէրը դարձաւ ու նայեցաւ անոր» ։ Սակայն ամէն ով որ ցաւ կ'զգայ, ղղջում ցոյց կուտայ առանց Տէրոջը ակնարկին հանդիպելու, առանց

խնքզինք Տէրոջը դէմ դարձած տեսնելու, առանց զԱնիկա անարգած, զԱնիկա անպատուած, զԱնիկա ուրացած եւ զԱնիկա վշտացուցած զգալու, առանց զԱնիկա տեսնելու, առանց Անոր՝ վերջապէս։ Ահա, կ'ըսեմ, այս կարգի ապաշխարող մարդու մը համար եւս կրնայ ըսուիլ, — «Մարդը դարձաւ ու մարդուն նայեցաւ»։ Քանզի այն չի ցաւիր որ, անառակ Որդիին նման, «Հօր»ը դէմ գործած է, այլ վասն զի իր շահուն, իր օգուտին դէմ մեղանչած է յիմարաբար՝ թողլով տունը, տեղը, վատնելով, փճացնելով հարստութիւնը, եւ հուսկ յետոյ կարօտ մնալով այլոց։ Պետրոսի լացը ու Յուդայի «մեղայ»ն ճշմարիտ ու կեղծ ապաշխարութիւնները կ'որակեն։

3. Ճշմարտապէս ապաշխարող մը մեղքը կ'նկատէ չարիք մը, ո՛չ վասն զի անոր բնական հետեւանքը ցաւ է ու «վարձքը մահ», այլ վասն զի ներհակ, աններդաշնակ ընթացք մ'է այն մեր բնութեան եւ Աստուծոյ կամքին միջեւ։ Վասն զի մեր կեանքին հեռացումն ու անջատումն է Աստուծոյ կեանքէն։

Այս ըմբռնումով զղջացող մեղաւորը կ'աղօթէ, — «Աստուած, քաւեա զիս զմեղաւորս = Աստուած, ողորմէ ինծի մեղաւորիս», ու ո՛չ թէ — «Աստուած, փրկէ զիս պատուհասէն»։ Նա կ'ուզէ ազատուիլ մեղքէն, ո՛չ թէ անոր լեղի պտուղներէն։ Թէ այն ունենար քաղցր պտուղ, դեռ պիտի աղաղակէր «Քաւեա զիս մեղաւորս», քանզի մեղքը զԱստուած կ'յափշտակէ իրմէ. այս է մահը, այս է դժոխքը։ Դաւիթ իր ապաշխարութեան աղօթքով կ'խնդրէր, «զՀոգի Սուրբ Քո մի՛ հաներ յինէն»։ Հոգիէն բաժնուիլ. ահա՛ Դաւիթի ցաւը, ահա՛ ապաշխարող մարդուն զգացումը։

Քրիստոնեայ մարդը մեղքին դէմ կ'հառաչէ, կ'բողո-

քէ ո՛չ թէ անոր ցաւալից վախճանին համար : Եթէ կարելի ըլլար փոխել իրողութիւնները, այնպէս որ բարութեան հետեւանքը ցաւ ըլլար, ու չարութեան հետեւանքը՝ խնդութիւն, տակաւին նա պիտի խորշէր չարութենէն : Վասն զի բարին յաւիտեան բարի է. չարը յաւիտեան չար է : Աստուած իսկ չի կրնար էապէս փոփոխել զանոնք : Անշէջ դժոխքը չի կրնար ճշմարտութիւնը ստութեան փոխարկել, ոչ ալ անվախճան երանութիւնը կրնայ ազնուացնել ապականութիւնը :

Ճշմարիտ ապաշխարութեան մէջ պատիժի գաղափարը մուտ գտած չէ : Մեղք չի գործել, վարձք ընդունելու համար, կամ բարիք գտնելու համար՝ Աւետարանէն օտար կրօնք է : Ապաշխարել, արդարութիւն գործել միայն մէկ շարժառիթով, զոր Ինք, Յիսուս Քրիստոս, հռչակեց, — «Որ ձեր երկնաւոր Հօրը որդիները կոչուիք» : Աստուած է վախճան կրօնքին ու հաւատքին : Առանց Անոր ոչինչ արժէք ունի : Ի՞նչ նշանակութիւն ունի նոյն իսկ լեռան չափ հաւատքը, եթէ այն չդնէր մեզ հաղորդակցութեան մէջ Աստուծոյ հետ : Անկախ Աստուծմէ՝ մեղք է անմեղութիւնը, սրբութիւնը՝ պըղծութիւն, բարեպաշտութիւնը՝ ամբարշտութիւն, բարին՝ չար. երկինքը դժոխք է :

Կ՚ըսես թէ շատ գթած ես աղքատին, բարի ու ազնիւ ես ընտանիքիդ, պարտաճանաչ ես ընկերներուդ հանդէպ, ուղղամիտ ես զբաղումներուդ մէջ : Ուրեմն, կ՚ըսես, փոյթ չէ թէ ի՛նչ կ՚խորհիս Քրիստոսի վրայ, ի՛նչ է դիրքդ նկատմամբ Անոր խաչին, կամ թէ ի՛նչ յարաբերութիւն ունիս Աստուծոյ հետ : Ես ալ կ՚ըսեմ քեզի թէ դուն անհաւատին հետ եղբայր ես, կռապաշտին հետ ընկեր ես : Քեզի հետ պիտի կորսուին քու բոլոր ազնիւ գործքերդ :

Մեղքը մեղք է. վասն զի կ՚նշանակէ անջատում

Աստուծմէ ։ Ո՞րն է մահացու մեղքը, եթէ ոչ անկում Աստուծոյ կեանքէն ։ Աստուծոյ կեանքը կորսնցնել իր մէջ — ահա՛ մեղանչելը ։ Անաստուածութիւն — ահա՛ բուն մեղքը ։ Եւ ինչո՞ւ կ'իյնան մարդիկ բարոյական կեանքէ ։ Զի իրենց անձերը չեն պահպաներ Աստուծոյ մէջ ։ Արեւէն հեռացող ամէն երկնային մարմին կ'իյնայ։

Այս գիտակցութեամբ է որ յաչս անկեղծ զղջացողի մը «մեծ մեղք», կամ «պզտիկ մեղք» չի կայ ։ Ամենէն աննչան մեղքին համար կ'արտմի նա, զի համոզուած է թէ մեղք կ'նշանակէ՝ անկում Աստուծմէ . եւ Աստուծմէ անկումն է անկում ամենաբարձր կէտէն ։

Ո՛հ, ե՞րբ պիտի հասկնանք թէ մենք կ'կարօտինք Աստուծոյ, Իրեն, քան երկինքին, քան ապագայ խոստումներուն, քան նոյն իսկ առաքինութեան կամ բարութեան ։ Աստուած Ինք է բարութիւնը, սրբութիւնը, ճշմարտութիւնը եւ ամենայն ինչ ։ Մեր հոգւոյն կարօտութիւնն է հաղորդ ըլլալ Իրեն։ Աւելի քան Իր շնորհքները, Իր օգնութիւնը, Իր պարգեւները, Իր իմաստութիւնը, Իր զօրութիւնը, աւելի քան ամէն բան խնդրենք զԻՆՔ ։ Անոր գլխաւոր ու վերջին նպատակն է ոչ թէ մեր անմեղութիւնը՝ անկախ իր վեհ անձէն, այլ մանաւանդ Իր **ընտանութիւնը** մեզի հետ ։

Ո՛վ ժողովուրդ, ահա այսօրինակ ապաշխարութեան կ'հրաւիրէ ձեզ այսօր Քրիստոսի Ս. Եկեղեցին — ապաշխարութեան՝ որ կ'տանի, կ'հաղորդակցէ ձեզ յաւիտենական Աստուծոյ, ապաշխարութեան՝ որ իր ետեւէն կ'բերէ «երկնից արքայութիւնը», ճշմարիտ խաղաղութիւնը հոգւոյն մէջ։ Կ'կանչէ քեզ տրտմութեան մը՝ որ մահ չի գործեր, այլ, մանաւանդ, կեանք, ճշմարիտ կեանք, լաւագոյն կեանք, բարձրագոյն կեանք, անմահ կեանք, կեանք Աստուծոյ՝ ներկային մէջ ու անդին ։ Կ'յորդորէ քեզ Նա դարձի մը, նոր յետադարձ ընթացքի

մը, որ քեզ կ'առաջնորդէ Աստուծոյ, Աղբիւրին բարութեան, գիտութեան, զօրութեան, փառքի, անմահութեան ։

Քրիստոս յօժար ու պատրաստ է ներել քեզ, Իր սուրբ արիւնով սրբել բոլոր սեւութիւնը հոգւոյդ, սպիտակ ընել քեզ ձիւնի պէս, Իր արդարութեան պատմուճանը ձգել ուսիդ վրայ, ընդունիլ քեզ որդեգրութեան մէջ, որդի ընել քեզ Աստուծոյ, ժառանգորդ՝ Անոր հարըստութեան, Իր սրտին բովանդակ սէրը նուիրել քեզ ։ Մի՛ յապաղիր, ո՛վ մեղաւոր մարդ, դարձիր, ու Ան քեզի պիտի դառնայ, քու արցունքներդ պիտի սրբէ, քու վէրքերդ պիտի բժշկէ ։ Մի՛ խստացներ սիրտդ ընդդէմ Թախանձանաց Եկեղեցւոյն, եւ մանաւանդ ընդդէմ Քրիստոսի յայտնած խորունկ, անմահ սիրոյն։ Զգուշացիր, մի՛ խստանար ։ «Ո՞վ իր սիրտը խստացուց եւ յաջողութիւն գտաւ»—հարցուցած է մարգարէն ։

Մի՛ մերժեր ապաշխարութեան հրաւէրը ։ Մերժումը մեծագոյն յիմարութիւնն է, ու վտանգաւորը, միանգամայն։ Փոխէ սրտիդ ճամբան, ուղին խորհուրդներուդ, ուղղէ գնացքդ, դարձուր երեսդ խաւարի ու մահուան ստուերներէն դէպի լոյս, դէպի յոյս, դէպի կեանք, դէպի սէր ։ Դարձիր, ապաշխարէ, «զի մերձեալ է արքայութիւն երկնից» յանձին Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն ։

# ԱՌԱԿ ԱՆԱՌԱԿԻՆ

---

## Ա.

*Մեծ տան մը մէջ պզտիկ հոգի մը, փառաւոր ապարանքի մը մէջ գձուձ կեանք 'մը իր բոյնը դրած էր։ Ազնուական մարդու մը անազնիւ որդին էր ան, որուն բոլոր դարերն ալ «անառակ որդի» ըսին։ Հարուստ ծնած էր ան, սակայն, որ կրնար «բաղդի զաւակ» կոչուիլ. փառքը կ'ժպտէր իրեն։ Այլ, աւա՜ղ, իրեն համար սահմանուած բոլոր բարիքներուն ու պատիւներուն փոխան միայն անարգ անուն մը ժառանգեց — «անառա՜կ»։ Ահա ի՛նչ որ իրեն մնաց։ Ընչեղ ընտանիքի մը վերաբերիլ, անբաւ հարստութեան ժառանգ ծնիլ՝ սիրտն ու միտքը աղքատ երիտասարդի մը համար՝ բաղդաւորութիւն չի նշանակեր։ Յաճախ ժայռեր են գանձերը, որոնց վրայ անհեռատես, անխորհուրդ, անղեկ կեանքեր կ'իյնան, կ'փշրուին։*

*Տեսէք այս երիտասարդին յղացումը, չինած ծրագիրը — «Հայր, քու ստացուածքէդ ինծի իյնալու բաժինը տուր ինծի»։ Սխալ ուղղութեամբ ծրագրուած կեանք մը՝ անծրագիր կեանքի մը հաւասար է. երկուքին ալ վախճանը խորտակում է։ Այս չողչողուն ծրագիրը հիմնուած էր անձնապաշտութեան, կամայական հաճոյասիրութեան վրայ, զոր իրագործելու համար հարկ էր ազատուիլ հօրը հրամաններէն եւ ընտանեկան բոլոր*

յարաբերութեանց զսպումներէն ու կաշկանդումներէն ։ Վիճակ մը, դրութիւն մը առանց սեղմումներու, առանց ոեւէ պարտաւորիչ նկատումներու, սանձարձակ ազատութիւն, մէկ խօսքով, իր երազած, իր գաղափարած կեանքին անարգել վայելման համար ։

Ահա այս էր փայլուն հիմնագիծը, որ շատ երիտասարդ մտքերու մէջ կ'կազմուի. այլ անոր իրականացման ճամբուն վրայ կ'անկուի հայր մը, «նախապաշարեալ կամ ծթռած, հինցած գաղափարներ»— ինչպէս սովորաբար կ'կոչեն իրենք — արգելք մը, վերջապէս, իրենց կարծեցեալ յառաջդիմական ձգտումներուն ընդդէմ ։ «Անձուկ է այս շրջանակ, մանաւանդ իմ զարգացած, մշակուած մտքիս համար ։ Ի՞նչ են այս ընտանեկան, ընկերական, բարոյական ու կրօնական կապերն ու սահմանափակումները ։ Տուէք ինձ իմ բաժինս, ու թողէք որ երթամ, թռչիմ երկրի ծայրերը, ուր ամէն բան գեղեցիկ, պայծառ եւ հանգստաւէտ է, ուր կեանքը վայելք է»։

Պէ՞տք է ըսել թէ այս երիտասարդը կորովի, առողջ իմացականութիւն մը չի ցուցներ, ոչ ալ իմաստուն սիրտ մը ։ Բայց տակաւին մեղադրելի չէ, զի անփորձ է, բոլորովին անփորձ աշխարհի. չի գիտեր կեանքը ու կենցաղը. անգէտ է ։ Կ'կարծէ թէ կեանքը հաճելի եւ դիւրատար կ'ըլլայ, երբ կ'ապրի ինքնակամ, ինքնագլուխ ։ Կ'կարծէ թէ որքան հեռանայ իր տունէն, իր բոյնէն, այնքան ազատ շունչ կ'առնէ, եւ թէ այնքան հեշտին ու քաղցր է կեանքը՝ որքան սանձարձակ է այն ։ Նա հաւատարիմ պաշտպանն է իմաստակութեան մը, որ ժամանակիս տիրող վարդապետութիւնն ու աշխարհիկ հաւատն եղած է ։ Այսինքն թէ պէտք է միջավայրը փոխել առանց ինքզինքը փոխելու, պէտք է հեռուները երթալ, որպէս զի կեանքն օրհնութիւն ըլլայ. չի խորհելով որ ճշմարիտ օրհնութիւնը կ'աճի մեր

Ճերսի դին, ոչ թէ մեզմէ դուրս։ Մարդիկ մղոններով կ'թափառին հանդիստ ու խաղաղութիւն գտնելու, երջանկութիւնն ապահովելու համար, մոռնալով սա իրողութիւնը թէ կրնան ձեռք ձգել զանոնք ոչ թէ իրենցմէ դուրս՝ հեռուն երթալով, այլ երթալով ճշմարտութեան եւ սրբութեան՝ իրենց մէջ. ոչ թէ փախչելով Հօրը տունէն, այլ մնալով հոն՝ Հօրը քով, Աստուծոյ սրտին մէջ։

Երիտասարդը գնաց, սակայն, հեռացաւ հօրենական տունէն առանց ետին նայելու։ Անհուն խնդութեամբ կ'թեւակոխէր օտար՝ այլ նոր սահմանները ընդարձակ աշխարհին, որ իրեն այնքան ծիծաղագեղ ու հրապուրիչ կ'երեւէր։ Հասած էր փափաքին. իր իղձերուն լրացման խաբուսիկ հեշտանքին գիրկընդխառն կ'գտնուէր։ Հոն հայր չի կար, որ ըսէր, «Մի՛ ըներ». չի կար հասարակաց կարծիք, որ «Ամօթ է» մրմռար, եւ ոչ ալ կրօնք, որ «Մեղք է» քարոզէր։ Հոն տաճար չի կար իրեն համար։ Ազատ էր, ու, առաջին անգամ, ցորչափ գրպանը դատարկուած ու առողջութիւնը խանգարուած չէր, հաճոյքի ու վայելքի օրերն սկսած կ'թուէին իրեն։ Կեանքին դառնութիւնը ճաշակած չէր դեռ։ Մարդ բարութեան, համեստութեան կապերը վայրկեանի մը մէջ կարող չէ խզել, հին յիշատակներու եւ բարոյականի թարմ տպաւորութիւնները մէկ հարուածով չի կրնար ջնջել։ Առաջին քայլափոխով չի հասնիր նսեմաստուեր գերեզմանին եզերքը։ Անկումի ու կործանման տանող ճամբան քայլ առ քայլ կ'առնուի։

Այս էր ընթացքն այդ փափկասուն, ազնուականի տղուն, մինչեւ որ «անառակ որդի» մ'եղաւ։ Վատնումը սկսաւ ու յառաջ տարաւ, մինչեւ որ բոլոր ունեցածը փճացուց։ Իր ազատութիւնը ժպրհութեան տարաւ, ժպրհութիւնը անհամեստութեան, անպարկեշտու-

թեան, լկտութեան ու անառակութեան։ Օրէնքի, պատուիրանքի, խրատի ու յանդիմանութեան ընտանի սահմանները ճեղքեց ու անցաւ, եւ ինքզինք նետեց օտար, անըմբնական քմահաճոյքի մահաբոյր ծոցը, անձնիշխանութեան վայրագ մթնոլորտին մէջ։

Ու հոն ի՞նչ ըրաւ — «Իր բոլոր ունեցածը փճացուց, վատնեց»։ Ի՞նչ կայ դիւրին քան վատնել։ Ո՛չ խելք, ո՛չ հանճար կ'պահանջուի վատնելու համար ստացուածքը, փճացնելու համար գեղեցկութիւնը, ոչնչացնելու համար միտքը, սպառելու համար կեանքը։ Ամէն մարդ կրնայ վատնել իր ունեցածը. շատ հեշտ է կեանքին փճացման գործը կատարել։ Ժողվել, դիզել, գանձել ու պահել ի՛նչ որ ուղղամտութեամբ վաստկուած է, եւ բարի վախճաններու, ազնիւ նպատակներու ծառայեցնել զանոնք։ — Ահա դժուարին գործը կենաց, որ թոյլ ու ապիկար բարոյականի տէր մարդոց տրուած չէ, որոնք ոչինչ գիտեն՝ բայց միայն ուտել, սպառել ցոփութեամբ։

Ան որ շահելու արուեստին չէ տիրացած, մէկ արուեստ ունի — վատնելու արուեստը, եթէ ներելի է այս անունը տալ։ Շփացած տղան ամէն բանի պատրաստ գտած էր. ձախորդ ուղղութիւն մը եւ յոռի կրթութիւն մը առած էր։ Վարժուած էր ծոյլ ու հեղգ բարքի մը, իր կամքն ու փափաքը միշտ կատարուած, իր պէտքերը միշտ գոհացուած գտած էին։ Սորված չէր իր ձեռքովը աշխատիլ, իր հացը ճարել։ Ըմբռնած չէր բնաւ թէ կեանքը պատեհութիւն մ'է, պարտականութիւն մ'է, կամ, ինչպէս կ'ըսէ Ռըսքին, «Կեանքը արուեստ մ'է»։ Անգիտացած էր թէ իր դիրքը միայն ինք կրնայ շինել։ Ո՛հ, պատրաստուած չէր մարդ ըլլալու, ապրելու։ Ինք շինած չէր բնակած տունը, ուստի քակեց զայն։ Ինք կուտակած չէր ինչքը ու ստացուածքը, ուստի հովերուն տուաւ զայն։

Մեծագոյն դասը՝ զոր պէտք է առնենք այս դէպքէն, այս գահավիժած, քայքայուած կեանքին փորձառութենէն, սա է թէ ան որ փախուստ կուտայ խղճի, սրտի եւ Աստուծոյ օրինաց հնազանդութենէն, չի կրնար վայելել իրեն շնորհուած պարգեւներէն ոեւէ մէկը, այլ կ'փճացնէ զանոնք ու կ'փճանայ ինք. թէ ան որ օրինազանցութեան լայնարձակ աշխարհը կ'ընտրէ ապրելու համար, հոն անառակութեան եւ զեղխ կեանքի անդունդը միայն կ'գտնէ. եւ թէ, վերջապէս, ան որ իր ընտանեկան յարկը կ'լքանէ, կ'կորսուի խպառ: Չարերը տուն չունին: Անառակը տունը չի սիրեր, տունէն կ'փախչի. աղտոտ, ապականուած կեանքն ընտանեկան մաքուր մթնոլորտին մէջ չի մնանիր: Ծուայտութեան, հեշտութեան կրծող ու զազիր որդը տունէն դուրս՝ ապականոցներու մէջ կ'ճարակի: Սրտով ու մըտքով իր ընտանիքէն հեռացող մարդու մը անկեղծութեան չեմ հաւատար: Անիկա կեանքի ու բարոյականի պատմութեան մէջ արձանագրուած մէկ անուն ունի — անառակ: Բարի մարդոց ոտքերը չիտակ իր տունը տանող ճամբուն մէջ կ'քալեն: Ամէն ճամբայ ծուռ ու մոլոր է. տանը ճամբան ամենէն ուղիղ ճամբան է աշխարհի վրայ: Սաղմոս-երգակ բանաստեղծն ըսաւ, «Երանի՜ անոնց, որոնց սրտին մէջ Տէրոջը ճամբան կայ»: Նոյնչափ ճշմարիտ է ըսել թէ երանի՜ անոնց, որոնց սրտին մէջ իրենց տան ճամբան կայ, քանզի իր տան ճամբէն խոտորող մարդն Աստուծոյ տանը ճամբան ալ չի գիտեր: Քու տանդ շաւիղներէն չի շեղին քայլերդ, այդ կէտէն կ'սկսի անկումդ ու փճացումդ: Դարձիր տուն, անկէ դուրս աշխարհ ընկղմող, խորասուզող ջրհեղեղ մ'է, ուր ոտքիդ դադար մը չի գտնուիր: Շարժէ կոտրած թռիչներդ, դե՛հ, թափառական ծիծեռնակ: Թռիր դէպի ծնած տեղդ, չիտակ տապանէն ներս, հէք աղաւ-

նեակ ։ Հոն կ'սկսի փրկութիւնդ , ապահովութիւնդ ։

Յառաջ երթանք տեսնելու անառակին վիճակը իր ցանկացած , սիրած երկրին մէջ ։ Ի՞նչ կայ հոն — **սաստիկ սով** ։ «Ու ան երկրին մէջ սաստիկ սով մը եղաւ»։ — Նա չռայլօրէն վատնած էր ամէն բան , եւ հիմա սկսած էր տուայտիլ սովատանջ ։ Արբշիռ կեանքին վախճանն այս է ։ Ան որ կ'ուտէ ու կ'սպառէ , այլ ոչինչ կ'արտադրէ, սովը կ'ստեղծէ ։ Չի գործող, չի սերմանող , չի հնձող՝ այլ ցորենը ուտողը ընկերութեան տիզն է , մարդկութեան ժանտախտն է , մեծագոյն չարիքն է երկրին ։ Մարդ մը կրնայ վաստկիլ բոլոր աշխարհը , ու կրնայ սպառել զայն, եթէ չի շահիր ։ Եթէ չես վաստկիր , քու միլիոններդ անգամ կ'հատնին , եւ օր մը կրնաս մուրացիկ մ'ըլլալ ։

Անգործ մարդուն ետեւէն սովը կ'ընթանայ ։ Մէկ անսպառելի բան կայ , սակայն ։ Ի՞նչ որ մեր անձերէն դուրս է կրնայ մսխուիլ , թէեւ անբաւ հարստութիւն ըլլայ այն ։ Մէկ բան կայ որ չի վատնուիր , զոր կարելի չէ փճացնել , եւ այն մեր շուրջը , մեզմէ դուրս չի գըտնուիր, այլ մեր **մէջ** ։ Ո՞վ է ան որ կրնայ շատ բան կորսնցնել — հարստութիւն , փառք , անուն , առողջութիւն — այլ չի կրնար կորսնցնել **ամէն բան** , որուն մէկ բան կ'մնայ միշտ ։ Ան՝ որ կ'ապրի հոգեւոր կեանքով , բարձր նկարագրով ու նպատակով , ազնիւ ու վսեմ գաղափարով , ան՝ որ գիտէ ճշմարիտը , կ'սիրէ ուղիղը ու բարին՝ չէ , չէ' կարող վատնել իր բոլոր ունեցածը ։ Հոգւոյն գանձերն անսպառելի են , սրտին հարըստութիւնն անվատնելի ։ Հոգեւոր աշխարհի մէջ սով չի կայ ։ Ո'վ մարդիկ , միայն ձեր գրպանին կամ դրամարկղին մէջ մի' դիզէք ։ Աղքատութեան ցեցը կըրնայ մտնել հոն ։ Գանձեցէք մտքին ու սրտին մէջ ,

որուն սահմաններէն ներս մուտ գտած չէ սովը ։

Տեսէք Թշուառ երիտասարդը. գլխիկոր, ամօթապարտ կ'երթայ նոյն երկրի բնիկներէն մէկուն — «Եւ գնաց այն երկրի քաղաքացիներէն մէկուն քով մտաւ, ան ալ իր ագարակը ղրկեց զինք խոզեր արածելու համար»։ Օ՜հ, աշխարհ ի՜նչ անգութ է. ոչ ոք խնայեց հէք պանդխտին, որուն խարտեաշ դէմքը, փափուկ ձեռքերը լռելեայն կ'իմացնէին թէ ազնուականի մը սիրասուն որդին էր ան, ունեւոր տան մը փափկակեաց զաւակը. որի՞ փոյթ։ Քաղաքացին իր հայրը չէր, օտար էր, ու առանց վարանելու ղրկեց զանիկա շիտակ ագարակը իր խոզերուն երամակը քշելու համար, ամենէն անարգ գործը ընելու համար։ Ա՜խ, անառակ տղայ, «Մնաս բարով» կ'ըսես հօրդ սառն անտարբերութեամբ, այլ չես գիտեր թէ առաջին մարդը, որ դիմացդ կ'ելլէ, խստասիրտ կամ անսիրտ պիտի գտնես. չե՞ս գիտեր որ «օտար սրտեր գութ չունին»։ Հօրդ պաշտպանող թեւարկութիւնը քեզի ծանր կ'թուէր, այլ դեւին իշխանութիւնը, ցանկութեան տիրապետութիւնն աւելի ծանր, աւելի դժնդակ ու անտանելի չե՞ս գտներ։ Հա՜յրը, հա՜յրը միայն. անոր դարձիր։ Անոր օրէնքը — թէեւ օրէնք ունի—սիրոյ օրէնք է. անոր լուծը —թէեւ լուծ ունի — քաղցրութեան լուծ է։ Բայց նա չէ՞ր կարող ուրիշ գործ մ'ընել բացի խոզարածութենէ։ Ո՛չ, ոչինչ սորված էր. ո՛չ ձեռքը եւ ո՛չ միտքը վարժուած էին լաւագոյն գործ մը կատարելու։ Ուտել, յափրանալ, յղփանալ. ահա այս կերպով անցուցած էր իր կեանքը, անպիտան կեանքը։

Հիմա իր ծառայական գործին, իր նոր կացութեան մէջ տեսնենք զանիկա, հէք երիտասարդը, որ ատենօք

իր տանը ճրագը եւ հօրն աչքին լոյսն էր ։ «Եւ կ'ցանկար խոզերուն կերած եղջիւրէն իր որովայնը լեցնել, այլ ոչ ոք կուտար իրեն» ։

«Ոչ մէկը կուտար» . — Ո՞ւր են այս երիտասարդին սիրական բարեկամները ։ Ցորչափ դրամ կար, ընկեր ունէր, բարեկամ ունէր ։ Բայց երբ վերջին ոսկին մանրուք ըրաւ, կերաւ ու կերցուց, ընկերները հեռացան իրմէ . ա՛լ չէին ճանչնար զինք . ա՛լ բարեկամ չունէր ։ Ո՜հ, «ոչ մէկը կուտար իրեն» ուտելու, թէեւ ինք շատերուն կերցուցած էր զեղխօրէն ու անխնայ ։ Չար մարդիկ միշտ այսպէս են, յուսախաբ կ'ընեն իրենց միամիտ զոհերը ։ Անառակին ընկերները ճշմարիտ ընկերներ չեն ։ Անառակը բարեկամ չունի ։ Չարերը չեն կրնար բարեկամ ըլլալ եւ բարեկամ ունենալ ։ Անոնք ընկեր են ոչ մարդուն, այլ անոր ունեցածին, ու երբ ունեցածը կ'հատնի, կ'լքանեն զանիկա ու կ'քաշուին ։ Անոնք կ'կեղծեն թէ կ'սիրեն քեզ, այլ իրողութիւնը սա է թէ կ'սիրեն քու դրամդ ։ Չար մարդը կրնայ թշնամի ըլլալ, բայց ոչ բարեկամ ։ Ան տզրուկի պէս կ'քամէ քեզ, ու երբ կ'ցամքի արեանդ վերջին կաթիլը, կ'խնդայ վրադ ու կ'անցնի, կ'երթայ ։ Ա՛լ չի ճանչնար քեզ քու անկումիդ ու կարօտութեանդ մէջ, չի ճանչնա՛ր ։ Վատթարացած կեանքը միայնակ է միշտ՝ նոյն իսկ բազմութեան մէջ ։ Դէպք մը չէ այս, որ տեղի ունեցաւ յանձին անփորձ երիտասարդին ։ Կեանքին հաստատուն իրողութիւններէն ու տխուր իրականութիւններէն մէկն է, ճշմարտութիւն մ'է, յաւիտենապէս ճշմարտութիւն մը՝ թէ չարութիւնը երբէք անկեղծ չի կրնար ըլլալ, չարութիւնը միշտ ինքնասէր է, ինչպէս անառակութիւնն՝ ինքնասպան ։

Ուրիշ արտառուած մ'ալ նժդեհ կեանքէն երիտա-

սարդին — «Եւ իր միտքը գալով (կամ ինքզինքին գալով) ըսաւ, քանի՜ վարձկաններ կան իմ հօրս տունը հացալից, ու ես հոս սովամահ կ'կորնչիմ»։ Ինչ գեղեցիկ բացատրութիւն — «**Երբ ինքզինքին եկաւ**»։ Ամէն մեղք յիմարութիւն է, ամէն անօրէնութիւն խելագարութիւն է, ինչպէս ամէն անաստուածութիւն անզգամութիւն է, — «Ասաց անզգամն ... թէ ոչ գոյ Աստուած»։ Մեղաւոր մարդն առ յաւէտ կորուսած է իր ինքնութիւնը, կորուսած է կիրքերը սանձելու, անձը կառավարելու եւ կամքին վրայ տիրելու փրկարար կարողը։ Մեղքը կ'կուրցնէ, կ'բթացնէ հոգեկան կարողութիւնները, կ'կոտրտէ բոլոր թռիչները, կ'աւրէ, կ'խանգարէ մտքին գործողութիւնները, կ'մարէ սրտին հուրն ու խանդը։ Չարութիւնը յիմարութիւն է, կատաղի յիմարութիւն, իր անձին դէմ դաւող քստմնելի անմտութիւնը։ Մի՛ կարծէք թէ խենդ են միայն անոնք, որ փակուած են յիմարանոցին մէջ ու յանձնուած են պահապաններու խնամոց։ Ամբարշտութեան յիմարութիւնը կայ, բարոյական յիմարութիւնը — եւ յիմարութեանց ամէն տեսակին մէջ բարոյական յիմարութիւնն է յոռեգոյնն ու սոսկալին։

Սակայն, փա՜ռք Աստուծոյ, բժշկուեցաւ այս խելակորոյս երիտասարդ — «Ինքզինքին եկաւ» ... ու որոշեց ելլել, երթալ հօրը։ Ինչպէս եղաւ որ վատթարացած, յիմարացած մարդը խելաբերեցաւ։ Ո՞վ բժշկեց զինք։ Ահա դարմանը — չքաւորութիւն, թշուառութիւն։ Ինչ տարօրինակ դեղթափներ խելակորոյս մարդը զգաստացնելու համար։ Աստուած ամենակարող Իր սըրբարանին մէջ զարմանալի պաշտօնեաներ կ'գործածէ։ Աղքատութիւն, վիշտ, ձախորդութիւն, հիւանդութիւն, եւայլն, ասոնք ամէնն ալ Հօրը վարձեալ ծառաներն ու սպասաւորներն են, զորս կ'ղրկէ յիմարացած զաւակ-

ները ուղղութեան եւ զգաստութեան բերելու, եւ փախըստական, անառակ որդիները իրենց ընտանեաց ծոցը վերադարձնելու ։ Սոյն երիտասարդին անարգ ծառայութիւնը, խեղճութեան ու տնանկութեան եւ սովատանջութեան դառն փորձառութիւնը սկիզբն եղաւ իր լաւագոյն կեանքին ։

Ոմանք կ'կարծեն թէ Հայրն Աստուած անտարբեր հանդիսատես մ'է անոր, որ զրկուած է ամէն բարիքներէ, որ մատնուած է յուսահատ կացութեան ։ Ո՛չ, ո՛չ, այդ ամէն զրկումներ Աստուծոյ հրեշտակներն են, Հօրը կոչն է դէպի տուն, դէպի փրկութիւն, դէպի բարութիւն, եւ դէպի անվախճան կեանք ։ Նոյն վիճակին մէջ է որ մենք զԱստուած կ'կանչենք եւ Աստուած մեզ կ'կանչէ ։ Նա կենաց մութ ու գահավէժ ճամբուն վրայ մեր դիմաց կ'ելլէ ։ Հայրը հոն միայն կ'գտնէ Իր փընտռածը, Իր կորուսած ոչխարը ։ Ո՜հ, ո՛չ, ամէն աւերակ սրտի մէջ խորան մը կայ, ամէն ամայի ու մութ տնակի մէջ սրբարան մը կայ, ամէն այրուող, մխացող կեանքի մէջ խունկի ու պատարագի սեղան մը կայ, ամէն խաւար ամպերու մէջ «Անոր աղեղ»ը — յուսոյ ծիածանը կայ, ամէն արցունքի շիթին մէջ Աստուծոյ ներկայութիւնը կայ ։

Վերջին տեսարանը կուգայ յուզիչ, սրտառուչ եւ ցնծաւէտ. — Օ՜հ, իրական վէպ մ'է իրաւ, ողբերգութիւն մը, որուն նմանը ո՛չ Հոմերի ու ո՛չ Տոն Քիշոթի միտքն արտադրած է ։ Անառակ որդին, վերջապէս, «Օգոստինեան սանդուխ»էն — ըստ Լոնկ-Ֆէլլօի — վեր կ'ելլէ կոխելով իր սխալանքներու եւ մոլորութիւններու աստիճաններուն վրայ ։ Բարի վճիռը կ'արձակէ — «Ելլեմ երթամ իմ հօրս առանց ինքնապաշտպանութեան ոգիի, առանց արդարացուցիչ առարկութեանց, կոխոտելով

հպարտութիւնս, կոտրելով, փշրելով ամբարտաւան սիրտս, երթամ, սոսկ երթամ, ու իյնամ իմ հօրս ոտքը, եւ առանց ջատագովական ճառ մը խօսելու, ըսեմ, միայն ըսեմ — «Հայր, մեղայ յերկինս եւ առաջի քո»։ Ըսեմ, «Հա՛յր, առողջութիւն չի կայ իմ մէջս, ոյժս իմ ժառանգած հարստութեանս հետ սպառեցի, ես վշտացուցի, անարգեցի, մերժեցի, վիրաւորեցի քեզ, ա՛լ որդի կոչուելու անարժան կ'զգամ, թող ծառաներուդ ամենէն նուաստը ըլլամ, ծառաներուդ ծառան ըլլամ, միայն թէ ընդունէ զիս քու յարկիդ ներքեւ, ո՛վ վշտացեալ, սրտաբեկ, սիրելի հայրս»։

Ո՛ւր որ այս աղօթքը կ'կրկնուի՝ երկրիս ամենէն խորունկ տեղը, ամենէն անդնդային անկումին մէջ, հոն փրկութիւնն ու շնորհքը կ'հասնին։ Եթէ այնքան հեռացած ըլլաս հօրը տունէն, այնքան մաշած, ուժասպառ եւ վատառողջ որ կարող չի զգաս ետ դառնալ, քալել բարութեան, լուսոյ, փառաց եւ կենաց ճամբուն մէջ՝ դէպի բնակավայրն անմահութեան եւ սիրոյ, ո՜հ, այս անկեղծ աղօթքին, այս սրտաբուղխ աղօթքին թեւերը պիտի թռցնեն քեզ դէպի տաքուկ ու սիրաբաբախ ծոցը գորովագութ Հօր։ Եթէ դու ինքնին կարող չըլլաս մտնել երկինք, երկինքը պիտի մտնէ քու սրտիդ մէջ։ Սկսէ նորէն. վէրքդ անդարմանելի չէ։ Մի՛ յուսահատիր որ անառակ եղար, թէեւ անառակ՝ բայց որդի ես. ու Ան՝ որուն դէմ մեղանչեցիր, քու Հայրդ է, որ քու կարօտովդ կ'մարի, որ քու դարձիդ կ'սպասէ, որուն աղիքները կ'գալարին քեզ համար։ Ո՜հ, քու Հայրդ է Ան, խանդակաթ Հայրդ, միշտ Հայր, ՀԱՅՐ։ Ու հայրը, տես, ի՛նչպէս կ'ընդունի իր որդին — «Ու ելաւ իր հօրը եկաւ, եւ մինչդեռ ինք հեռաւոր էր, հայրը տեսաւ զանիկա, ու գութը շարժեցաւ, եւ վազելով անոր պարանոցին վրայ ինկաւ ու համբուրեց զանիկա»։

# ԱՌԱԿ ԱՆԱՌԱԿԻՆ

---

## Բ.

*Մեր Ս. Հայրեր Մեծ Պահոց Կիրակիներու ընթերցման եւ խորհրդածութեան համար մեծ իմաստութեամբ ընտրած են այնպիսի կտորներ Ս. Գրքէն, որ հօտէն կորսուած, մոլորած ոչխարները իրենց երջանիկ փարախը վերադարձնելու ամենէն աւելի համոզիչ եւ յուսադրող բնութիւնը ունին։ Անոնք շատ լաւ ըմբռնած են կրօնքին ու Ս. Գրքին ոգին՝ ցոյց տալով մեղաւորին ներող եւ սիրող ՀԱՅՐը՝ քան արդար Դատաւորը։ Անոնք՝ մեր բարեպաշտ, հոգեսէր նախնիք, ապրեցնող հոգին կարդացած ըլլալով մանաւանդ՝ քան «սպաննիչ» տառը, կարծրացած, քարացած սիրտը չեն ուզած փշրել, փորել, այլ ջանացեր են «սիրով ճմլել» զայն. — «Սէր անուն Յիսուս — Սիրով քով ճմլեա՛ — Սիրտ իմ քարեղէն»։ Այս է աւետարանաշունչ աղօթքը. զի Աւետարանին պարունակած աւետիսն է փրկութեան յոյս ամէն դատապարտեալ ախտացած, հիւանդացած կեանքի եւ խորտակուած նկարագրի։ Անյուսութիւնը դիւական է. ընդունելութիւն, յօժարութիւն, յոյս, սէր՝ Աստուածային են։*

*Ու այս առակը — Անառակ Որդին — որ թագն ու գոհարն է բոլոր Ս. գրական առակներուն, ու ամենէն գունագեղ, հեշտաբոյր ծաղիկն՝ սրբազան մատենագրու-*

*թեան բուրաստանին, «պզտիկ Աւետարան մ'է, ինչպէս ըսուած է, Աւետարանին մէջ», ուրմէ եթէ վտարուէին բոլոր առակները, այս մէկ հատը բաւական պիտի ըլլար ի յայտ բերել, պարզել, բացատրել Աստուծոյ մտքին յաւիտենական մէկ խորհուրդը ու գերազանց ճշմարտութիւնը, որուն փրկարար, բարերար ազդեցութիւնը անկեալ մարդկութեան վրայ պիտի տարածուէր ցկատարած աշխարհի: Եւ ինչո՞ւ չի համարձակիմ ըսել թէ «Անառակ Որդի»ն, այսպէս յօրջորջուած առակը, որ կրնայ կոչուիլ նաեւ Մեղաւորին, Կորսուածին, անառակ մարդուն առակը, անջատ իր սրբազան հոգեկան հանգամանքէն, իր պարզութեան ու այնքան համառօտութեան մէջ, բոլոր ռոմանթիկ գրականութեան մէջ չունի իր նմանը: Ո՛չ Թոլստոյ, ո՛չ Իպսէն եւ ո՛չ այլ ոք երբէք գաղափար մը այնքան շօշափելի վիճակի մէջ, այնքան խտացած ձեւի տակ կարող եղած է ներկայացնել ամենէն բթացած, բրտացած մտքին առաջ՝ քան այս սրբազան վէպը, որ զուտ հոգեւոր, գերաշխարհիկ ու նոյն ատեն սրտայոյզ ճշմարտութիւն մը մարմնացուցած, իրականացուցած ու մերձեցուցած է մարդուն, նոյն իսկ ամենէն նիւթականացած, աշխարհականացած ու ամէն բարոյական բարձրագոյն զգայնութիւն կորսնցուցած մարդուն, որ կրնայ որպէս թէ ափին մէջ բռնել, սեղմել զայն, կամ դպչիլ Աստուծոյ սիրազեղ, տաքուկ սրտին՝ իբր թէ քովն ըլլար Ան:*

*Սոսկ առակ մը չէ այս. Լաֆոնթէնի առակներուն չի նմանիր. միայն բարոյականի դասեր չի պարունակեր: Մի՛ արհամարհէք զայն: Ուշ տուէք անոր. իր համեստ անունին տակ դասական գրականութենէ, սրբազան բանաստեղծութենէ աւելի՝ երկինքի երաժշտութիւնը, Աստուծոյ նուագն է այն, որ վերերէն բերուած, հնչեցուցուած է անդնդային խորութեանց մէջ գլորուող, տա-*

պըլտկող հէք մարդկութեան ականջին ։ Լսեցէք անոր թովիչ , յափշտակիչ հնչիւնը — «Անառա՜կ . . . ՈՐԴԻ՛, դարձիր , ՀԱՑԸ կ'սպասէ քեզի կարօտիւ» ։ Ո՜հ , Քրիստոնէական քնարն է այս , Աւետարանական երգը՝ այս պարզունակ , անսեթեւեթ՝ այլ խորունկ , խորո՜ւնկ , ովկիանէն խորունկ առակը , որուն գրերն յոյս կ'ցայտեն , վանկերը՝ լոյս , բառերը՝ կեանք , տողերը՝ սէ՜ր , աննման , անհուն , յաւիտենական սէր ։

Այս առակը փոքրիկ՝ բայց կ'գծէ այնպիսի լայնեզր շրջանակ մը , որ աշխարհները կ'ընդգրկէ ։ Անոր սահմաններէն ներս յաւիտենապէս մուտ չեն կրնար գտնել յուսահատութիւնը , անհնարութիւնը , երկիւղն ու պատուհասը։ Դժոխք չի կայ անոր պարիսպներէն ներս ։ Անոր հորիզոնին վրայ մահուան ստուերներ չեն իյնար երբեք ։ Անոր ոսկի դռները միշտ բաց են տարիներով , դարերով մոլորած , կորսուած , աղքատացած , փճացած , մահամերձ հոգիներուն ։ Օ՜հ , Աստուծոյ երկինքն ու ՍԷՐԸ պարագրուած են անոր մէջ ։

Այս պատուական , հատընտիր առակը , համառօտ եւ ամփոփ իր անհուն ընդարձակութեամբը , կրնայ բովանդակուիլ սա մէկ համարին մէջ — «Այս իմ որդիս մեռած էր ու կենդանացաւ , կորսուած էր ու գտնուեցաւ»։ Եւ այս համարն ամբողջ մեկնութիւնն է, կամ, ոսկեղէն բանալին՝ բովանդակ առակին ։

«Այս իմ որդիս մեռած էր» . — Մարդ մը որ դադրած է լաւագոյն , ազնուագոյն , բարոյական կեանքով ապրելէ՝ իրապէս մեռած է , թէեւ մարմինով կենդանի ըլլայ ։ «Մարմնաւոր կեանքը մահ է» ։ Մարդ մը , որ վատնած , դատարկած է սրտին գանձերը , իրապէս աղքատ է, թէեւ հարուստ ըլլայ քսակով ։ Մարդ մը, որ աւերած , աղտոտած է իր վրայ դրոշմուած բարոյական տիպը , Աստուծոյ պատկերը , իրապէս տգեղ է , որքան

ալ գեղանի երեւի արտաքուստ ։ Մարդ մը, որ հոգեկան բարձրագոյն վայելքէ զուրկ է, որ սրբազան, ճշմարիտ, բարձրացուցիչ հաճոյքներու օտար է, իրապէս ապերջանիկ է, որքան ալ ընկղմած ըլլայ զգայական հեշտութեանց մէջ ։ Մարդ մը, որ հեռացած է «հօրը տունէն», — հեռացած է այն միջավայրէն, ուր իր նկարագիրը, իր հոգեկան էութիւնը կազմող, սնուցանող կենսական տարրերը կ'գտնուին, ուր արեւն ու լոյս, օդն ու շաղերը կան, որով կեանքը, բարոյական, անմահ կեանքը կ'աճի, կ'մեծնայ, կ'ուռճանայ ու կ'պտղաբերի ։ Վերջապէս, մարդ մը, որ կտրած, խզած է իր հաղորդակցութիւնը բարութեան, ճշմարտութեան, գեղեցկութեան, սրբութեան, փառքի, լոյսի ու կեանքի կեդրոնէն — Աստուծմէ, մեռած է, ո՛հ, ՄԵՌԱԾ է ։

Աստուծմէ հեռացումը մահն է՝ իր խորունկ, իրական իմաստով ։ Մարդուն բարոյական բնութեան անդամալուծութիւնը, առանց Աստուծոյ, միայն աստուածաբանութիւնը կամ նոյն իսկ պատմութիւնը չէ որ կ'ապացուցանէ ։ Բնութեան հանգիտութիւնք միեւնոյն յաւիտենական ճշմարտութիւնը կ'շեշտեն ։

Ամէն գործարանաւորի գոյութիւնն ու զարգացումը կախեալ է անմիջականապէս իր մթնոլորտէն ։ Կտրեցէք, զոր օրինակ, բոյսի մը խորշիկը ու հեռացուցէք օդէն, եւ մահն անխուսափելի է ։ Անջատեցէք սերմնահատիկ մը խոնաւութենէ ու ջերմութենէ, եւ գետինն անոր գերեզմանը պիտի դառնայ ։ Կեանքը՝ ստորին ըլլայ այն կամ բարձրագոյն, կ'զարգանայ մի միայն ներկայութեամբ եւ հպմամբ այն իրերուն, որոնք կ'շրջապատեն զինք ։ Փոյթ չէ թէ որքան հնարաւորութիւնք, թագուն կարողութիւններ, խորհուրդի եւ առաքինութեան սերմեր, արուեստի եւ հանճարի ծիլեր պարուրուած են անոր կորիզին մէջ ։ Առանց նպաստաւոր մթնոլորտի մը

անոնք ամէնը կ'ոչնչանան իրենց սաղմին մէջ, ինչպէս դիտել կու տայ Բրոֆ. Տրըմմընտ։

Ու ճշմարիտ մթնոլորտը բարոյական կեանքին՝ Աստուած է։ Անոր մէջ միայն խիղճը կ'արթննայ, բարութիւնը կ'փթթի, ճշմարտութիւնը կ'ծաղկի, սէրը կ'բոցավառի, ծնունդ կ'առնէ արդարութիւնը, որ յաւիտեան պիտի ապրի։ Առանց այս մթնոլորտին՝ հոգին չի մեծնար, չապրիր. կ'մեռնի։

Աստուած է՝ միայն Աստուած, հեղինակն ու աղբիւրն ամէն բանի, որ բարի կ'կոչուի, ճիշդ ինչպէս արեւն է աղբիւրը լուսոյ եւ ջերմութեան։ Անկէ հեռացումը՝ կ'նշանակէ խաւարը հոգւոյն, մահը մարդուն բարձրագոյն, լաւագոյն եւ յաւիտենական էութեան։ Մարդուն անկումը կ'սկսի այն վայրկեանէն՝ երբ նա երես կ'դարձնէ ամէն առաքինութեան եւ բարութեան Աղբիւրէն։ Անառակ որդւոյն դահավիժումն սկիզբ չառներ իր ցոփ, շուայտ կենցաղավարութենէն օտարութեան մէջ, այլ այն օրէն երբ իր հօրը տունէն մեկնեցաւ՝ այն նոյն օրէն սկսաւ իր անառակութիւնը. ինչպէս նաեւ իր փրկութիւնը սկսաւ այն ժամուն՝ երբ որոշեց ետ դառնալ։ Նա անառակ էր հօրը դռնէն դուրս։

Միայն պեղխ, անբարոյական, անհամեստ մարդիկ չեն որ «անառակ» կոչուելու արժանի են։ Ամէն անոնք որ խզած են իրենց յարաբերութիւնը Անկէ՝ որ չէ թէ բարի է, ճշմարիտ է, արդար է, եւայլն, այլ Ինքն է բարին, Ինքն է ճշմարիտը, Ինքն է կեանքը, Ինքն է գեղեցիկը եւ Սէր։ Մի՛ հաւատաք մարդու մը նկարագրին եւ հոգեկան կեանքին, որ Աստուծմէ հեռի՝ օտար մթնոլորտի մէջ կ'ապրի։ Անկէ կտրուած, բաժնուած կեանքին վրայ գիտութեան լոյսը, դաստիարակութեան ազդեցութիւնը յառաջ կ'բերեն այն արդիւնքը՝ զոր կ'բերեն արեւը, օդն ու անձրեւը ամէն ճիւղի վրայ, որ

մայր տունկէն կտրուած, ինկած է . այսինքն՝ նեխում եւ ոչնչացում ։ ԶԱստուած մերժող մարդու մը մէջ գերագանց հոգի գտնուած չէ ։ Ո՛հ, անաստուածի մը կուրծքին տակ անարատ սիրտ մի՛ փնտռէք ։ Անջատ Աստուծմէ՝ վսեմ կեանք չի կայ, անմեղ հոգի չի կայ . վասն զի մեղք կոչուած չարիքին վերջնական պատճառը՝ Աստուծմէ հեռացումն է ։ Ստել, կեղծել, անիրաւել, խաբել, վատթարանալ, եւայլն, բուն մեղքը չեն, այլ արդիւնքն են ծնող մեղքին ։ Բուն մեղքն է Աստուծմէ փախչիլ, ըսել Անոր — «Քաշուէ ինծմէ» ։ Իսկական անկումն է թողուլ զԱստուած ։ Մեղքն անհաւատութիւնն է ։ Չարիքն անաստուածութիւնն է ։ Ուրացում, անվստահութիւն, անհաւատութիւն Աստուծոյ դէմ . ահա մեղքը, ահա արմատն ամէն դառնութեան, ահա սկիզբն անկումին, ահա դժոխքը, ահա մահը ։ Անհաւատութիւնն ուրիշ բան չի նշանակեր՝ բայց միայն փակումը սրտին ընդդէմ բարձրագոյն, խորագոյն, ճշմարիտ եւ իրական Բարւոյն, վեհ կեանքին եւ անմահ սիրոյն ։ Մերժել զՔրիստոս՝ կ'նշանակէ մերժել զՆա, որ է լոյսը, կեանքը, ճամբան, ճշմարտութիւնը ու «ԱՄԷՆ»ը ։

Եւ, վերջապէս, հօրը տունէն դուրս, Աստուծոյ ընտանութենէն հեռի, չի կայ անդորրութիւն ու խաղաղութիւն ։ Ո՛վ որ երես կ'դարձնէ այն Էակէն, որ ճշմարիտ Հայրն է, սիրող Հայրը՝ կ'թշուառանայ, կ'ստորնանայ, կ'օտարանայ ։ Ո՛հ, օտարութեան մէջ աստանդական եւ թափառական է կեանքը . հոգին խռով՝ ու ծփանքի մէջ է միշտ ։ Օտարութեան կեանքը մահուան կեանք է ։ Աշխարհի ցոյց տուած հրապուրիչ ընդունելութիւնը կեղծ ու վաղանցիկ է . սովի ժամանակ, կեանքի մթին օրերու մէջ, անսիրտ ու անգութ է ձեզ դէմ ։ Այլ Հայրը ձեր յուսահատ կացութեան մէջ սիրով ու կարեկցութեամբ կ'բորբոքի, Անոր աղիքները կ'գալարին ։

Ետ դարձէք, ո՛վ աղքատացած, փճացած, վատնուած, կորսուած, մեռած, յուսահատ հոգիներ. դարձէք այն տունը, ջինջ միջավայրը, Հօրը ծոցը, ուր հոգին կ'սնանի, կ'ապրի ու կ'հասնի ճշմարիտ բարձրութեան եւ իրական երջանկութեան։ Ո՛հ, դարձէք. հոն՝ ուր կ'կենաք՝ սով կայ, խոզերու դարչ ընկերութիւն։ Այլ Հօրը տունը առատութիւն կայ. հոն սովը մուտ չի գտներ. հոն ազնուացուցիչ, հաւատարիմ ընկերակցութիւն կայ։ Ու Հայրը խանդավառ սիրով եւ գրկաբաց կ'սպասէ ձեր ճամբան։ Հաւատացէք Անոր խոստումներուն, հրաւէրին, Անոր սիրոյն։ Հաւատացէք ԻՐԵՆ, հաւատացէք, ո՛հ, թշուառներ, անառակներ՝ բայց ՈՐԴԻՆԵ՛Ր։ Ու դարձէք Իրեն, բարի, հզօր, մեծ, փրկող Հօր, ձեր հարազատ Հօր, ու այս — դառնալ, երթալ առ Հայր, հաւատալ ի Քրիստոս — կ'նշանակէ առոյգ ՓՐԿՈՒԹԻՒՆը։

# ԱՌԱԿ ՏՆՏԵՍԻՆ

---

*Ամենէն աւելի ջուր վերցնող, խրթին առակը նկատուած է այս — Տնտեսին առակը — որուն՝ իրարու ներհակ եւ յաճախ աւելի կնճռող քան լուսաբանող մեկնութիւններ տրուած են Ս. Գրոց մեկնիչներու կողմէն։*

*Եթէ մեր գրուածքին հիմնագծէն դուրս չի նկատէինք մեկնաբանական մասը, կրնայինք, գէթ համառօտիւ, մատնանիշ ընել այսօրինակ այլաբանական հատուածներ մեկնելու հինցած, անապահով մէթոտը, որմէ ծագում առած է ներկայ առակին առերեւոյթ դժուարութիւնը։ Այս ձախող դրութեամբ — զանց ընել առակին ընդհանուր ոգին, տիրող խորհուրդը, եւ չառական նշանակութիւններ տալու ճգնիլ, զոր օրինակ, «հարուստ մարդ»ուն, «պարտապան»ներուն, «տնտես»ին իրեն, եւայլն, իբր թէ անոնք միստիքական անձնականութիւններ կամ անձնաւորուած սկզբունքներ եւ մարդկային հետազօտութեան անհրաժեշտ առարկաներ ըլլային, ու ոչ թէ սոսկ պատմութեան ձեւական մասը լրացնող դէմքեր — այս դրութեամբ, կ՚ըսենք, ինքզինքնիս կ՚գտնենք առեղծուածացեալ, անհնարին դժուարութեան մէջ՝ յանգելով սա անհեթեթ եզրակացութեան, որպէս թէ Տէրն մեր գոված եւ հետեւելի օրինակ մը ներկայացուցած ըլլար անհաւատարիմ տնտեսի մը բիրտ ու խաբէական ընթացքը։ Մինչ տնտեսին նենգամիտ, յոռի գործին մէջ ցոյց տուած փութկոտ, եռանդուն արթ-*

նամտութիւնն ու գործունէութիւնն էր, զոր կ՚յանձնարարէր Աստուծոյ հաւատարիմ, անկեղծ տնտեսներուն իրենց բարի եւ ուղիղ գործոց մէջ, ու կ՚ուզէր այս առակով բիւրեղացնել բարձր վարդապետութիւն մը թէ՝ «որդիք լուսոյ» պարտին յոյժ աւելի գերազանց իմաստութիւն ու եռանդ ցոյց տալ իրենց ազնուագոյն, արքայական տնտեսութեան, իրենց հոգեկան պարտականութեանց մէջ, իրենց յաւիտենական ապագային եւ անվերջ, անեղծանելի նկարագրին — լաւագոյն մարդուն համար, քան որչափ «որդիք աշխարհի», որոնք գձուձ միջոցներ 'ու աշխարհիկ ուշիմութիւն ի գործ կ՚դնեն իրենց ներկային կամ ժամանակաւոր ապագային համար, իրենց սահմանափակ տիեզերքին — մարմինին, եւ իրենց ողորմելի աստուածին — նիւթին համար։

Ահա այս է, մեր կարծիքով, առակին կեդրոնակէտը, անոր քանդակած, պատկերացուցած վսեմ գաղափարը, ու այս հայեցակէտէն միայն կարող կ՚ըլլանք թափանցել քրիստոսաբանական առակը, ուղիղ ըմբռնել Անոր խորունկ միտքը, որմէ կրնանք քաղել հոգեւոր, առողջ, շինիչ դասեր։

Արդ, մէկդի ընելով պատեանը ոստրէին, դուրս հանենք մարգարիտը, որ թաղնուած է անոր մէջ։ Կոտրենք կաղինը. առակին յագեցուցիչ, քաղցրիկ մասը կեղեւէն ներս կ՚գտնուի։

Այս առակ՝ Քրիստոսի անհուն մտքին մէջ յղացուած, հիւսուած ու ձեւակերպուած, հարեւանցի ակնարկով կարգ մը «մեծ», «հրաշալի» կոչուած մտային արտադրութեանց նման չունի յափշտակիչ հանգամանք ու շողշողուն երեւոյթ—ու յայսմ կ՚կայանայ անոր գերազանցութիւնը, հրաշալիքը, այսինքն՝ պարզութեան մէջ վսեմութիւնը, հասարակ լեզուի մէջ Աստուծոյ գաղափարը, աննշան բացատրութեան մէջ Անհունին խորհուրդը —

հսկայ միաքեր ընկղմող ովկիանոս մը ծանծաղուտի մէջ։ —Այո, չունի, կ'ըսենք, վէպի մը փայլը ու խաբուսիկ, հետաքրքրաշարժ պարագաները. այլ, սակայն, կ'ծրարէ իր մէջ անգին, անսպառելի գանձերը. կ'գծէ բարձրագոյն, վսեմ, անմահ կեանքի յաւիտենական սկզբունքը։ Կ'ըսէ մարդուն թէ ի՛նչ է անոր վեհ կոչումը, կուտայ անոր նշանաբան մը, փառաւոր, ճշմարիտ նշանաբան մը թէ՝ «ԴՈՒՆ ԲԱՐՁՐԵԱԼ ԱՍՏՈՒԾՈՅ ՏՆՏԵՍՆ ԵՍ»

Ահա առակին հոգին, որ մարդկային կեանքին բարոյական հիմունքը կ'կազմէ։ Դրէք այս հիման վրայ կեանքը, ու այն կ'ըլլայ լուսաւոր, գեղեցիկ, բարի ու ճշմարիտ։ Դուն, ինչպէս քու ունեցածներդ, Աստուծոյ կ'վերաբերիս, Անորն ես, ոչ թէ քուկդ։ — Ո՜հ, Քրիստոնէական կեանքի բարձրութեան գաղտնիքը կ'չեչտուի այս ճշմարտութեամբ։ Այս գերազանց սկըզբունքը թոյլ կ'ընծայէ հոգւոյն՝ ամենէն վերին մթնոլորտը սաւառնելու բարոյական տիեզերքին։ Վերցուցէք այս հիմնաքարը մարդկային կեանքի յօրինուածքէն, ու այն, որքան ալ բարձր ու հաստատուն, պիտի իյնայ, քանդուի ահեղ չառաչմամբ։ Մարդկային մեծագոյն սխալանքներէն մին է ըսել «իմս» — «իմ ստացուածքս», «իմ բարիքս», «իմ անձս»։ Այսպէս ըսել՝ կ'նշանակէ կեանքին բոլոր հայեացքներուն, նկատումներուն, հաշիւներուն շրջանակը յանչափս նեղցնել, սահմանափակել, եւ անոր կեդրոն ընել իր փոքրիկ «ես»ը։

Ահա պզտիկ, տգեղ, խարխուլ կեանքի մը ճշգրիտ պատկերը։ Փախէք այն մարդէն, որ «ես»ը գիտէ, ու «իմս» կ'մրթմրթայ. աղտոտ, զազիր հոգի մ'է ան, ընկերութեան սրտին քաղցկեղը։ Մարդ չի կրնար ըսել մինչեւ իսկ «իմ անձս» — բայց միայն երկրորդական նշանակութեամբ — ո՛ւր մնաց ըսել «իմ ստացուածքս», «իմ դրամս», «իմ հարստութիւնս», «իմ վաստակս»։ Ո՛չ,

*Կ'սխալիս , սարսափելի կերպով կ'սխալիս ։ Չես կարող ըսել մինչեւ անգամ «իմ առողջութիւնս» . անակնկալ մը կուգայ , կ'տանի ունեցածներդ , կ'խլէ առողջութիւնդ , կ'զգետնէ ուժեղ մարմինդ ։ Կրնա՞ս ըսել ո՞ւսկէ եւ ի՞նչ կերպով եկաւ հարուածը ։ — «Ո՛չ , չեմ գիտեր» կ'ըսես ։ Ահա այս «չեմ գիտեր»ին մէջ կ'պահուի լուրկ խոստովանութիւնդ թէ քու կամքէդ անկախ պատճառ մը , հզօր , բարձրագոյն կամք մը կայ , որ կ'տիրէ , որ կ'իշխէ , որ կուտայ կամ կ'առնէ ըստ հաճոյս ։ Միայն Աստուած կրնայ ըսել «Ես» , կրնայ ըսել «Ես եմ» , «Իմս է» ։ Դուն ոչինչ ունիս իրապէս . քու ունեցածներուդ բացարձակ տէրը դուն ինքդ չես ։ Չէ՛, քուկդ չեն անոնք , քուկդ չեն տունդ , դրամդ , ստացուածքդ , բարիքներդ, առողջութիւնդ ու միտքդ , այլ Անոր կ'վերաբերին՝ որմէ ընդուներ ես ։*

*Դուն վերակացուն ես անոնց , անտեսը Աստուծոյ տան — քու ժողովրդային , ընկերային շրջանակիդ մէջ ։ Մի՛ պարծենար անոնց վրայ , անմի՛տ մարդ , այլ հաւատարմութեամբ եւ խղճմտօրէն գործածէ զանոնք , եթէ ոչ՝ հաշիւ պիտի տաս Անոր, որ տէրն է քու եւ քու ունեցածներուդ , ու պիտի իյնաս քու դիրքէդ ։ Կեանքի մէջ հիմնական , ահաւոր սխալն այն է, որ մարդ կ'գործէ զինք բացարձակ տէրը կոչելով իր անձին ։ Մինչեւ չի վանէ այս մահացու համարումը իր խեղճ եսին վրայ է , չէ կարող հետեւիլ ուղիղ , ապահով ընթացքի մը ։ Ոչ ոք կրնայ ապրիլ իմաստութեամբ , ճշմարտութեամբ , խորունկ կեանքով , մինչեւ չպատուի սա մոլար գաղափարէն թէ բացարձակօրէն իրենն են ինք եւ իր ունեցածներ ։ Հոս է Քրիստոնէական հաւատքին մեծ գաղտնիքը ։ Համոզեցէք մարդ մը թէ իր անձն իրենը չէ , բայց եթէ անձուկ իմաստով , թէ գնուած անձնաւորութիւն մ'է ինք , թէ ինք կ'վերաբերի ուրիշի մը ,*

թէ իր կեանքին վախճանն է փառաւորել զնա — Տուիչն ամէն բարեաց, եւ ծառայել Անոր հոգիով, մարմինով ու ամէն իրերով, որոնք կ՚վերաբերին Անոր, կ՚բղխին իրմէ դուրս՝ այլ էակէ մը — Աստուծմէ, թէ՝ վերջապէս, ինք կոչուած է տնտեսել իրեն շնորհուած նիւթական եւ բարոյական ձիրքերն ու պարգեւները ուղղամտութեամբ եւ յօգուտ այլոց, ապրիլ այլոց համար։ Այս համոզումը յառաջ բերէք անոր մտքին մէջ, եւ ահա կ՚բերէք զանիկա ուղիղ, հաստատուն կէտի մը վրայ. կ՚յեղաշրջէք կեանքը, կ՚փրկէք զանիկա։ Ո՛հ, դրէք այս ոգին կեանքի մը մէջ, ու այն կ՚ըլլայ իտէալ կեանքը, ճշմարիտ ու մեծ կեանքը, հոգեւոր ու անմահ կեանքը։

Ի՞նչ է ամէն չարիքի եւ բարոյական խեղութեանց աղբիւրը, եթէ ոչ ինքնասիրութիւնը։ Ո՞վ է ամենէն պզտիկ մարդը, ամենէն չար մարդը, բայց եթէ ան՝ որ իրերը իր անձնականութեան լուսովը կ՚տեսնէ։ Ու Քրիստոս, Տէրն մեր, այս առակին միջոցով իր փրկարար դանակը կ՚մխէ մարդուն սիրտը ապառող վէրքին մէջ, կ՚խլէ արմատէն անձնամոլութիւնը, ինքնապաշտ, եսասէր ոգին։ Կ՚դնէ իր մատը հոգեկան կազմութեան ջիղին վրայ ու կ՚ըսէ. — «Դուն ես **տնտեսը**, ո՛չ թէ տէրը, քու բոլոր ունեցածներուդ ու բուն իսկ անձիդ. գիտցիր որ հաշիւ պիտի տաս անոնց ամենուն համար, ուստի ըստ այնմ գործածէ։ Կեանքիդ վախճանն ու նպատակը քու եսդ չէ, այլ Ինծի համար եւ Իմ ուզած կերպովս գործածել պարտիս. պէտք է ապրիս ԻՆԾԻ համար, ոչ թէ քեզի համար, եթէ կ՚ուզես ճշմարիտ քրիստոնեայի իրական կեանքով ապրիլ, եթէ կ՚ուզես տեւական ընել քու գերագոյն էութիւնդ եւ ամէն ինչ որ ունիս»։

Ո՛հ, տեսէք Քրիստոնէական կեանքին անհամեմատ բարձրութիւնը։ Այս աշխարհի բարոյականին, համե-

տութեան , պարկեշտութեան ու «ազնուութեան» չի նմանիր ։ Տեսէք Քրիստոսի սկզբունքը, որ հիմ դնել կ'առաջարկուի մեր կեանքին , նկատեցէք Անոր «օրէնք»ը , ընդարձակ , անսահման օրէնքը , որով կ'դատուի քրիստոնեայ մարդը . այն նժարը , որոյ մէջ կ'կշռուի անոր նկարագիրը ։ Սքանչելի , եզական յայտնութիւն չէ՞ այս զոր ի վեր կ'հանէ «Տնտեսին առակ»ը ։

Անցեալ շաբթու դեղխ , չուայտ կեանքի մը պատկերը ներկայացուցինք , որուն հանդիսատես եղանք յոյժ վերերէն նայելով ։ Այլ ի՞նչ էր անոր տգեղութիւնը չեշտող , անկումը փութացնող պարագան , եթէ ոչ «վատնում»ը այն ժառանգութեան , զոր յիմար երիտասարդը իրենն ըլլալ կ'կարծէր ։ Հոս մեր առակին մէջ եւս խարդախ Տնտեսին վրայով եղած ամբաստանութիւնը սա է թէ՝ «իր ունեցածը կ'վատնէ» — «Եւ եղեւ զնմանէ ամբաստանութիւն , որպէս թէ վատնիցէ զինչս նորա» . — Ահա գլորման , խորտակման պատճառն անսկզբունք կեանքի մը , — **վատնում** ։

Ո՛վ որ իրեն աւանդ տրուած օրհնութիւնները չարաչար կ'գործածէ , կ'վատնէ , եւ հետեւաբար անառակի մը ու խաբեբայ տնտեսի մը կեղտոտ բարքովը կ'ապրի . ո՛վ որ կ'փճացնէ իր սրտին ու մտքին գեղեցիկ ձիրքերը , կ'դատարկացնէ հոգին իր գերագոյն բարիքներէն , կ'կարատէ անոր թեւերն ու թռիչները , կ'մսխէ, կ'սպառէ իր ֆիզիքական ու բարոյական կարողութիւնները , կ'աւերէ մարմինը՝ ինչպէս հոգին , հովին կուտայ իր վառ երեւակայութիւնը , խանդը , աւիւնն ու սէրը , ո՜հ , սէրն անմահ . ո՛վ որ իր ընդունած նիւթական ու բարոյական բարիքները միայն իր «ես»ին , իր անարգ կիրքերուն ու հաճոյքին կ'զոհէ . ո՛վ որ միայն ինքզինք կ'հոգայ ու կ'մոռնայ իր թշուառ եղբայրները . ո՛վ որ միայն իրեն կամ իրեններուն համար կ'ապրի, այն մարդը

միեւնոյն ամբաստանութեան ու միեւնոյն պատասխա-
նատուութեան կ'ենթարկէ զինքը։ Նոյն անողոք վճիռը,
նոյն ծանր դատակնիքը պիտի տրուի իրեն դէմ — «Տուր
զհամար տնտեսութեան քո, զի ոչ եւս կարես լինել
տնտես»։ Ո՜հ սոսկալի է այս «ոչ կարես»ը. այլ տխուր
իրողութիւն մ'է թէ ամէն քրիստոնեայ՝ որ կ'վատնէ
իր կարողութիւնները, գործածելով զանոնք իրեն—եսին
համար միայն, հուսկ ապա կ'ըլլայ անկարող, — «ոչ
եւս կարես»։

Վերջապէս, սոյն առակն աւելի խորունկ իմաստով,
աւելի ընդարձակ մտօք կ'շեշտէ սա ճշմարտութիւնը
թէ՝ ան որ իր ստացուածքը, հոգին ու կեանքը չէ դրած
Աստուծոյ տրամադրութեան ներքեւ՝ նա մսխող, վատ-
նող, անհաւատարիմ տնտես մ'է, գող սպասաւոր մ'է
մէկ բառով. յիմար մ'է, որ ինքզինք կ'փճացնէ. իր
կեանքը ուտող ցեց մը։ Ան որ երբէք չաղօթեր ան-
կեղծօրէն՝ թէ «Իմ Տէրս, ի՞նչպէս կամիս որ գործածեմ
Քու պարգեւներդ», նա աղօթած չէ բնաւ. անիկա
պաշտում, երկրպագութիւն չունի։ Ամէն ի՞նչ որ չի
բարձրացներ հոգեւորապէս՝ վատնում ու սպառում է։
Ի՞նչ որ սրտին մէջ չի գանձուիր, գանձում չէ, ցրում
է։ Մէկ իրական կուտակում կայ — հոգւոյն մէջ եղած
կուտակումը։ Ի՞նչ որ չես հաւաքեր յաւիտենական գան-
ձարանին մէջ, չես ժողվեր, այլ կ'թափես ծովը։
Քու ժողվելդ կ'նշանակէ ցրուել, վատնել. քու ա-
ւելցնելդ կ'նշանակէ սպառել. հարստանալդ կ'նշա-
նակէ աղքատանալ։

Եթէ կ'կերակրես միայն ինքզինքդ՝ կ'սպաննես
զայն։ Եթէ կ'շահիս անձդ, սոսկ անձդ՝ կ'կորսնցնես
զայն։ Եթէ կ'վաստկիս քսակիդ մէջ, կ'պարարես
մարմինդ, գիտցիր որ կ'խորտակես նկարագիրդ,
փտութիւն ու մահ կ'գործես բարոյական կազմութեանդ

մէջ — բուն մարդուն մէջ ։ Նկատէ ինքզինքդ, իբր ճշմարիտ քրիստոնեայ, Աստուծոյ հաւատարիմ տնտեսը, յայնժամ վտանգ չի կայ մեծութեան, հարստութեան, փառքին ու վայելքին մէջ ։ Առանց այս սկզբան, առանց այս լոյսին՝ առատութիւնը սով է, հարստութիւնը՝ չքաւորութիւն, մեծութիւնը՝ փոքրութիւն, շահը՝ վնաս, վայելքը՝ ցաւ, կեանքը մահ է ։



# ԱՌԱԿ ԴԱՏԱՒՈՐԻՆ

---

Տարօրինակ չէ՞ք գտներ որ Եկեղեցին, Մեծ Պահոց մէջ, երեք Կիրակի յաջորդաբար տգեղ պատկերներ, արատաւորեալ, սեւցած դէմքեր կ'ներկայացնէ՝ Յաւիտենականին մօտեցնելու համար ժողովուրդը։ Խստացած, աշխարհականացած ու բարոյապէս մեռելացած հոգիները ցնցելու, արթնցնելու համար, փոխանակ սուրբերու, առաքելոց անստգիւտ բարեպաշտութեան եւ առաքինութեան դրուատիքը ընելու, **անառակ** որդւոյն, **անհաւատարիմ** տնտեսին եւ **անիրաւ** դատաւորին դատապարտելի, յոռի կեանքերը կ'ուրուագծէ։

Զարմանալի չէ՞ նոյն երեւոյթը Ս. Աւետարանին մէջ ու ամբողջ Ս. Գրքին մէջ, ուր փայլուն եւ աղօտ նկարագիրներ քով քովի գրուած են, ուր նկարուած դէմքեր կամ տեսարաններ իրենց հակապատկերներն ունին, ինչպէս տեսած ենք յաճախ նկարներու հռչակաւոր ցուցավայրերու մէջ։ Ոմանք խստիւ կ'քննադատեն, ու մինչեւ իսկ կ'գայթակղին այն խորշոմէն, որ Դաւիթի սպիտակափառ ճակտին վրայ դրոշմուած է։ Սակայն ճշմարիտ իրողութիւն մ'է թէ անյոյս կերպով ինկած, կորած մեղաւորի մը վրայ այնքան չազդեր Դաւիթի բարեպաշտութիւնը քան անոր ողբերգական, մեղանչական անկումին պատմութիւնը։ Անոր հոգեկան բարձրութեան վրայ նայելով, ես կ'ըսեմ իմ անձիս, — «Զգոյշ եղիր, նոյն իսկ այդ բարձր կէտէն, այդ վերին մթնոլորտէն կրնաս գահավիժիլ անդունդ»։ Եւ յետոյ

անոր անկումին խորութեան վրայ նայելով, կ'ըսեմ. — «Մի՛ յուսահատիր, ո՛վ անձս, այդ լաբիւրինդոսէն ալ կրնաս ելանալ, հասնիլ այն բարձունքին, ուր նոյն ինքն Իսրայէլի մեծ քնարերգակ բանաստեղծը հասաւ»։ Երկու սրաթռիչ թեւեր, Շնորհք ու Հաւատք, Թռցուցին զանիկա հոն՝ նոյն գերաշխարհիկ մակերեւոյթին վրայ, ուրկէ ինկաւ անգամ մը։ Ո՛չ, սուտ է, դժոխային է այն ձայն, որ ականջիդ կ'փսփսայ, — «Անկումդ խոր է, յատակը չի տեսնուիր, հոդ այդ նուաստ դիրքին մէջ պիտի մնաս, լոյս չի կա՛յ քեզի»։ Ո՛հ, ո՛չ, քու հոգւոյդ անողոք, անհաշտ թշնամին, աշխարհին վայելքը՝ կրնայ ջլատել բարոյական ոյժերդ, կարող է յաղթահարել, զարնել, ձգել քեզ, այլ չի կրնար, երբէք չի կրնար քեզ ցվերջ պահել այդ ողորմելի, մեղանչական դրութեան մէջ։

Ահա ինչ որ ազդու կերպով կ'ուսուցանէ ներկայ առակը, ինչ որ կ'ուսուցանեն նախորդ երկու առակները։ Առակներու սքանչելի երրորդութիւն մը, արդարեւ, որ միեւնոյն գաղափարը կ'մարմնաւորէ, միեւնոյն միտքը կ'շօշափէ, որ կ'պաշտպանէ միեւնոյն դատը — մեղաւորին դատը։ Ցանցաւորներուն, թշուառ ու դժբաղդ մարդոց օրրական առակները, որոնք մինչ պիտի կարդացուին անոնցմէ, ու Եկեղեցին տարին գէթ մի անգամ պիտի կարդայ, պիտի քարոզէ անոնց։

Գիտէ՞ք գիրք մը, որուն մէջ ասոնց նման գրուածքներ երեւցած ըլլան — գրուածքներ՝ որոնք լոյս կ'ցայտեն, յոյս կ'ներշնչեն, կեանք կ'բուրեն։ Հիանալի չէ՞ այն, որ կ'կոչուի իրաւամբ ԳԻՐՔԸ։

Ու մանաւանդ հիանալի չէ՞ Հեղինակն այս գերագոյն ճշմարտութեանց. Ան՝ որ յղացաւ ու արտասանեց այս առակները։ Ո՞վ խօսեցաւ Անոր պէս։ Ան՝ որ չեկաւ դատապարտելու, այլ դատապարտեալը արդարա-

ցընելու, ու մահացեալ մարդը փրկելու, ապրեցնելու համար։ Ա՛ն՝ որ չի խորշեցաւ մաքսաւորներէն, ու բարեկամ եղաւ մեղաւորներուն, ու Ա՛ն՝ որ ընկերացաւ, սիրեց Փարիսեցւոց անարգած ու աշխարհի երեսէն ինկած չարերը ու անարժանները։ Ո՛հ, Ա՛ն՝ որ ոչ միայն սիրեց այլ անձն ալ զոհեց անոնց համար. ի՞նչ կ'ըսէք, բարոյականի մեծ վարդապե՞տ մ'էր, կրօնի հիմնադի՞ր մը սոսկ, թէ Բանն էր Աստուծոյ։

Ներկայ առակը, որ ծանօթ է «Անիրաւ դատաւոր» անուամբ, ու նախորդ երկու առակները սա գերազանց առանձնայատկութիւնը ունին՝ որ դիմում կ'ընեն վհատած մարդուն խղճին, կամ, մանաւանդ, **դատողութեան**։ Տէրն մեր այս երրեակ առակով կ'խօսի մարդուն **մտքին** քան սրտին. անոր դատաստանին կ'ենթարկէ խնդիրը։ Ասոնց մէջ, այս առակներուն մէջ, համոզում ու տրամաբանութիւն կայ — Աստուծոյ տրամաբանութիւնը։ Այո՛, անոնց մէջ բարձրեալ Տէրոջ վիճաբանութիւնը կայ մարդուն հետ։ Կարծես բացատրուած, չեշտուած օրինակն է այն հին վիճաբանութեան, զոր Եհովան բացաւ իր ժողովրդին դէմ. — «Եկէք հիմա ձեզի հետ վիճինք, եթէ ձեր մեղքերը կրկնակի կարմիրի պէս են, ձիւնի նման սպիտակ պիտի ըլլան», եւայլն։

Ու այս առակներու մէջ եւս տեսէք ինչպիսի տրամաբանական ձեռնարկ մը կ'ընէ Ինք, Քրիստոս։ Երկու իրարմէ անբաւապէս հեռի իրեր բաղդատութեան կ'դնէ, ու կ'յանգի ուղիղ, անժխտելի եզրակացութեան մը, որ ամենէն թերահաւատ մտքին անգամ կրնայ ազդել։ Կ'ըսէ առաջին առակով — Անառակ որդւոյն առակով — թէ «Ահա հայր մը, որ մարմնաւոր ու մահկանացու հայր մ'է, վերջապէս, որ իր թերութիւններն ունի, որուն սէրն ալ, գորովն ալ սահման մը ունին։ Այլ, սակայն, այս նոյն հայրը, արարած հայրը, կ'գթայ, կ'ներէ

անօտակ, ապերախտ, անպիտան զաւկի մը, հապա — ահա զէնիթը բաղդատութեան — հապա երկնաւոր Հայրը, հոգիներուն Հայրը, ճշմարիտ Հայրը, որուն աչքին անհուն է, ու «անօտակ որդւոյն» հօրը աչքը կաթիլ մ'է միայն իր սրտին ծովէն կաթած, ո՛հ, այս Հայրը միթէ չը՞նդունիր Իրեն դիմող հէք զաւակները»:
— Դո՛ւք դատեցէք:

Նոյն բաղդատութեան հեռաւոր ծայրերը կրնանք դիտել երկրորդ առակին մէջ: Խարդախ, անխիղճ, անհաւատարիմ տնտես մը, վերջապէս, իր ապագայ տագնապէն ազատելու համար ի գործ դրած հնարամիտ միջոցներով ու ջանքերով, կ'յաջողի ողոքել իր աշխարհիկ տիրոջ սիրտը եւ մինչեւ անգամ արժանանալ անոր մնոտի, անարդար գովեստին: Օ՜հ, հապա — եւ ո՞վ կրնայ չափել այս երկու եզրերուն ահաւոր հեռաւորութիւնը — հապա ձեր Տէրը, որ անհունապէս բարձր է անկէ, որ աչքերուն Տէրն է, միթէ անողոք պիտի մնա՞յ, պիտի չողորմի՞, երբ դուք ձեր յաւիտենական ապագային համար, ձեր հոգւոյն մնդուեան համար, ձեր մնայուն ընդունելութիւնը ապահովցնելու համար, ձեր նկարագիրը փրկելու համար, վերջապէս, անզօր ճիգեր կ'թափէք, միջոցներու կ'դիմէք, որոնք, նման տնտեսին, կրնան աւելի եւս նուաստացնել ձեզ քան բարձրացնել: Ան՝ հարուստ Տէրը, բարի Տանուտէրն անտարբեր պիտի մնա՞յ հանդէպ ձեր տկար ճիգերուն: Եզրակացութիւնն այս համեմատութեան՝ տարակոյս, կասկած չի վերցներ: Տարակոյս Աստուծոյ սիրոյն վրայ — ահա բուն մեղքը, ահա մեծագոյն արատը, զոր կրնայ թերահաւատ ձեռք մը քսել Անոր լոյս դէմքին վրայ:

Անդրադառնալով մեր ներկայ առակին — «Անիրաւ դատաւոր»ին, բաղդատութեան եզրերն անսահման կերպով կ'հեռանան: Հոս աստուածային վիճաբանութիւնը

աւելի բուռն, աւելի ուժգին է։ Անոր տրամաբանութիւնը յոյժ աւելի կտրուկ եւ անպատասխանելի է։

Հոս սարսափելի, ապշեցուցիչ հակակշիռ մը տեղի կ'ունենայ։ Տեսէք, ամենակալն Աստուած, յաւիտենական Հայրը, ո՛վ յափշտակութեանս, տեսէք, որի՞ հետ կ'չափուի, որի՞ հետ համեմատութեան կ'դրուի. — կշռորդի մէկ նժարին մէջ կ'կենայ դատաւոր մը, որ ո՛չ միայն մարդ արարած մ'է հունաւոր, այլ եւ անիրաւ ու անսիրտ է, շահամոլ ու ինքնասէր է. ո՛չ միայն Աստուծոյ երկիւղը չի գիտեր, բայց նաեւ մարդոցմէ պատկառանք չունի։ Այս աստիճան ոչնչացած հոգի մը, հոգի մը՝ որ այնքան թեթեւ կ'կշռէ։ Ու նժարին միւս կողմը մնած է Ինք, նոյն Ինքն . . . ու ա՛լ դուք կշռեցէք։

Առակ մ'է ինքնին պարզ ու անպաճոյճ, այլ ի՜նչ պերճախօս ապացուցութեամբ, ի՞նչ հզօր չեշտերով կ'փաստէ, կ'խօսի, կ'որոտայ. ու աշխարհ թող լսէ անոր երկնային բարբառը. — «Ո՛վ մարդիկ, ո՛վ իմ ծառաներս, այս անձ դատաւոր մ'էր, բայց ես Հայր եմ քան որչափ դատաւոր. ու եթէ դատաւոր եմ, անիրաւ չեմ՝ անոր պէս անխիղճ ու անզգայ չեմ. ու եթէ այս միեւնոյն դատաւորը իր բոլոր չար հանգամանքներով վերջապէս իրաւունք ըրաւ անտէրունչ այրիին՝ պարզապէս անձնասիրաբար, ազատելու համար անոր ամենօրեայ ձանձրոյթէն, հապա՛ — ու այս «հապա»ին մէջ է բովանդակ խորունկութիւնը ; միտքերը ընկղմող, խորութիւնները թաղող անհեղ խորութիւնը, հապա՛, ով սիրելի շաղկապ, հապա ե՞ս — ու այս «ԵՍ»ը բաղդատել պէտք է այն միւս «ես»ին հետ — Ես իրաւունք պիտի չընե՞մ անոնց, իմ ընտրեալ ծառաներուս, որ գիշեր ու ցերեկ ինծի կ'աղաղակեն»։

Սոյն անդիմադրելի հզօր տրամաբանութեամբ Քրիս-

տոս կ՚փաստաբանէ Աստուծոյ կողմէն, կ՚համոզէ, կ՚թախանձէ թշուառ, անօգնական մարդը, որ չի լքանի, չի յուսահատի երկնային արդարութենէն եւ իր հոգիին փրկութենէն. այլ յանձնուի մեծ ու արդարակորով Դատաւորին, դիմէ Անոր, իր հոգիին ցաւը յայտնէ Անոր, սիրտը բանայ Անոր, հաւատալով որ անպատասխանի չի պիտի մնայ վերջապէս։ Ու Ան՝ որ այս դատին, Աստուծոյ դատին, ի նպաստ կ՚փաստէ, օրհնեալ Փրկիչն է, որ ամէն տրամաբանութենէ ազդու, ամէն փաստերէ գեր ի վեր, անվիճելի, իրական փաստը կ՚բռնէ Իր ծակուած, վիրաւոր ձեռաց մէջ, ու ամենէն համոզիչ ապացոյցը կ՚կրէ Իր խոցոտեալ, արիւնահոս կուրծքին վրայ։

Բաւական չէ՞ այս՝ վստահութիւն ներշնչելու համար ամէն ողջամիտ, ճշմարտասէր մարդու՝ դիմել յուսով եւ անձանձրոյթ երկնաւոր, բարի Հօր՝ իր կարօտութեան, իր դժբաղդութեան ատեն։ Այս իսկ է առակին ոգին, որ բովանդակուած է առաջին համարին մէջ — «Անոնց առակ մը եւս ըսաւ այս բանիս վրայով թէ **Պէտք է ամէն ատեն աղօթք ընել ու չի ձանձրանալ»**։

Առակին ամենիմաստ, ամենապէտ Հեղինակն այս գերընտիր ոճով չի յուզեր իմաստասիրական, փիլիսոփայական կամ բնազանցական խորունկ խնդիր մը։ Գիտական կամ հոգեբանական նոր յայտնութիւն մը չըներ։ Այդօրինակ չլացուցիչ, բարձրաթռիչ հայեացքներէ հեռի՝ կ՚շօշափէ շատ հին՝ բայց ոչ հինցած, ու միշտ նոր՝ արեւին ու լոյսին պէս, կ՚դպչի ճակատագրական անմահ ճշմարտութեան մը։ Կ՚հաստատէ պէտքը, ազդեցութիւնն ու ստուգութիւնը վսեմ յարաբերութեան Աստուծոյ եւ հոգեւոր աշխարհին հետ, որ կ՚կոչուի ԱՂՕԹՔ։

Հէ՛, աղօ՛թք, կ՚հծծէ սկեպտիկ աշխարհը, սակայն։ Աղօ՛թք . . . ու ցուրտ հեգնութեամբ մը կ՚պատասխանէ անոր կառչող, ապաստանող «միամիտ»ներուն։ Այլ մեր

հարցումն անոր՝ սա է, սա պարզ հարցումը — Գիտե՞ս ի՞նչ կ՚նշանակէ աղօթք. ու այդ ընդարձակագոյն իմաստով, այդ լայն ըմբռնումով աղօթա՞ծ ես երբէք ։ Ո՞վ պիտի վկայէ աղօթքի իրականութեան ու անոր գործնական արդիւնքին ։ Որի՞ հարցնել պէտք է աղօթքի վրայով ։ Ո՞վ է հեղինակութիւնն անոր ։ Հարցուր աչք չունեցող մարդուն թէ ո՞ր մոլորակը պայծառագոյն է. կամ խուլ մարդու մը՝ թէ ի՞նչ դիտողութիւն կամ դատողութիւն ունի Մոցարդի կամ Վակնէրի հրաշակերտներուն վրայ. թէ ի՞նչպէս կ՚գնահատէ Հէնտըլի «Եղիա»ն ու Մէնտէլսընի «Մեսիա»ն ։ Ի՞նչ գաղափար ունի երկրի մթին փորին մէջ գալարուող խլուրդը այն վերի բարձրութեանց վրայ, ուր արծիւն իր բոյնը կ՚դնէ ։ Ի՞նչ արժէք ունի հիւսիսային բեւեռին նկատմամբ արտայայտուած կարծիքը, որ կ՚բղխի իր գիւղական նեղ միջավայրին մէջ ամփոփուած մարդէ մը ։ Մարմնաւոր մարդուն մի՛ հարցներ հոգեւոր տիեզերքին բարձրութիւնները ու հեռաւոր բեւեռները ։ Մի միայն իմացականութիւնն իր բովանդակ կարողութիւններով իրաւունք չունի վճիռ արձակելու անոր վրայ ։ Նիւթապաշտ մարդուն «այո»ն կամ «ոչ»ը չունի կշիռ մինչեւ սէգ գլուխը խոնարհեցնէ անտեսանելի Իրականութեան առաջ, մինչեւ ծունր դնէ Անոր գահոյքին ներքեւ ու մրմնջէ, «Հայր մեր, որ յերկինս ես» ։

Եւ ո՞ր գաղափարի մարդ պիտի յամառի չի ճանչնալ չօշափելի կապերէն զատ՝ այն անտեսանելի, գաղտնի միջոցները, որոնցմով յարաբերութեան մէջ կ՚դրուինք մենք նոյն իսկ մեր նիւթեղէն աշխարհին հետ ։ Գիտէ՞ք աւելի ստոյգ իրականութիւն քան այն գերբնական ազդեցութիւնը, երկնային Ոգին, որ Սէր անունով կ՚կոչուի ։ Ո՞վ ըմբռնած է այն օրէնքը, որով մոլորակներն իրարու եւ արեւին կ՚կապուին, ու արեւները՝ տիեզերք-

ներու կեդրոնին ։ Եւ ո՛ւր է, ո՛վ գիտէ, կեդրոններու կեդրոնը, վերջին կեդրոնը ։ Հաւատացի՛ք մագնիսականութեան, անթել հեռագրի գիւտին, ու չի՞ հաւատացի՛ք անհուն մտքի մը գիւտին, մեզի անծանօթ Օրէնքի մը, որու միջոցով հոգին կ'հպի Հոգիին ։ Է՞ր այնքան կ'արհամարհէք միստիքականը, կ'խրտչիք անտեսանելիէն ։ Ինչո՞ւ չէք կարծեր Տէքարդի հետ թէ աննիւթ աշխարհն է աւելի հաստատուն իրականութիւն, եւ Հըքսլիի հետ թէ **«Մենք մտքով աւելի կ'գիտնանք քան մարմինով»** ։

Կարելի՞ է ուրանալ գոյութիւնը գաղափարի աշխարհին, այն վերերկրային մթնոլորտին, ուրկէ բանաստեղծն իր նուագը կ'ընդունի, Ս. Գրոց մարգարէներն՝ իրենց հեռաւոր հորիզոններն ընդգրկող տեսիլը, առաքեալն՝ իր պատգամը, ու սուրբն՝ իր ներշնչումները ։ Անոնք են՝ աղօթողները, որ բան մը կ'բերեն վար իրենց հետ, բան մը՝ որ աստուածային է, բոյր մը, գոյն մը, լոյս մը կ'ունենան իրենց քով, իրենց վրայ, իրենց մէջ, որ երկինքէն է ։ Անոնք Արեւին սկաւառակին կ'դպչին ու կ'այրին եւ կուգան, կ'այրեն մեզ ։ Մարդկային սահմաններէն հեռի, շատ հեռի, աղօթքի աշխարհէն եկողներն են անոնք՝ մեծերը, նախասահմանուած մարդիկը, դարը ծնող մեծ մարդիկը ։

Իսկ դուք, շարունակեցէք աղօթել, հաւատացեալ ժողովուրդ, աղօթքի մարդիկ, ճշմարիտ, կենդանի վկաներ աղօթքի ։ Եթէ մարդիկ ըսեն թէ ձեր աղօթք չազդեր Աստուծոյ վրայ, ըսէք, սակայն, Աստուած կ'ազդէ մեր վրայ, մեր հոգւոյն վրայ ։ Եթէ ըսեն, Աստուած չի շեղիր Իր ուղղութենէն, Իր կամքը միայն կ'կատարէ. պատասխանեցէք, Մենք ալ նոյնը խնդրեցինք — **«Եղիցին կամք քո»** ։ Ու այդ կամքը, աւելի վեր, աւելի իմաստուն եւ աւելի բարի քան մերն՝ այն օրէն նոյնացաւ մեր կամքին հետ, մերն ու Իրենը ներդաշնա-

կութեան մէջ մտան ։ Ըսէք թէ՝ եթէ գիտնայինք որ Աստուած միշտ մեր աղայի փափաքները պիտի կատարէր, մեր անգէտ կամքը պիտի ընէր, բնաւ չի պիտի աղօթէինք ։ Ըսէք անոնց թէ աղօթքը հաւատքի սրաթռիչ թեւով կ'նետէ մեզ Աստուծոյ բաբախուն լանջքին վրայ, ու հոն Անոր սրտին բոցով ու երեսին ճառագայթով կ'զարդարուինք, կ'կազմաւորուինք այս խաւար աշխարհին համար ։

Եթէ մարդիկ, ո՛վ քրիստոնեայ, ցոյց տան քու փորձութիւններդ ճիշդ այն պահուն երբ սրբավայրէն կ'վերադառնաս, կամ դուրս կ'ելլես խորանիդ առանձնութենէն, երբ վար կ'իջնես աղօթքի լեռնէն, ըսէ հպարտութեամբ — Ո՛չ, կ'սխալիք, անպատասխանի չեմ դառնար, մեղմիկ ձայն մը հնչեց ականջիս — «Ես քեզի հետ եմ, ես քեզի կ'օգնեմ», ու իսկոյն խաչս թեթեւցաւ՝ կամ համբերութիւնս աւելցաւ, ու ա՛լ սիրով կրնամ կրել զայն ։ Պատասխանէ թէ Նա, իմ Հայրս, ցուցուց ինծի հոգեւոր իտէալ մը շատ շքեղ եւ յոյժ արժէքաւոր, որ իմս պիտի ըլլայ մօտաւոր երկնային ապագայի մը մէջ ։ Նա ըսաւ որ աշխարհի փորձութիւնները պիտի շինեն քու մէջ ադամանդեայ նկարագիր մը, յարմար կեանք մը յաւերժական բնակարանին համար ։ Նա Իր թելով, ըսէ դարձեալ, չափեց ժամանակին կարճութիւնը, ու սորվեցուց թէ «աշխարհի ժամանակաւոր վայելք եւ ուրիշ բաներ ոչինչ են ապագայ անվախճան փառքին քով»։ Ո՛հ, ըսէ վերջապէս, թէ Ան երկինքի յակինթ դուռը բացաւ, յայտնութիւններ ըրաւ ինծի, պարզեց, լուծեց իմ խռովիչ, տանջող ու շփոթող կնճռոտութիւններս, եւ ահա արցունքներս սրբած՝ օրհնաբանական նոր երգով մը վար կուգամ աղօթքի վերնագաւառէն ։

Աղօթեցէք, ուրեմն, աշխարհ սուտ է ու Քրիստոս ճշմարիտ ։ Մենք, մարդիկս, պզտիկ ենք ու Քրիստոս մեծ,

*եւ Ինք աղօթքի բարձունքներէն վար իջաւ ու մեզի ըսաւ «ԱՂՕԹԵՑԷՔ» ։*

*Աղօթեցէք, զի աղօթող հոգին նշաւակ չըլլար փորձութեանց — փորձութիւնք՝ որ հոգւոյն յամառ թշնամիներն են, որոնց յարձակումները սպառնալից ու ահեղ են ։ Աղօթքը հոգւոյն միակ զէնքն է բարոյական, զոր նոյն ինքն Քրիստոս գործածեց ընդդէմ դժոխոց զօրութեան, ընդդէմ կատաղի Դիւին ։ Ո՛հ, աղօթեցէք անկեղծօրէն, ճշմարտապէս ։ Աղօթեցէք անսահման հաւատքով, զի առարկան հաւատքին անսահման է կարողութեամբ ու զօրութեամբ. ու Այն — հաւատքին առարկան — է Քրիստոս ։ Ըրէք ձեր կեանքը մշտամրմունջ ԱՂՕԹՔ մը ։*



# ԳԱԼՍՏԵԱՆ

Տեառն մերոյ յորդ խօսքերու ընթացքը, հռետոր-բանաստեղծի մը հետ կրնանք նմանցնել լայնածաւալ, խոր գետի մը, որ մղոններով կ'հոսի, կ'թաւալի հեզիկ ու հանդարտիկ։ Իր նիրհող մակերեսը ալիացնող պըղպջակ մը, խռովքի շունչ մը չանցնիր։ Կ'սահի, կ'գլորի միշտ խաղաղիկ ու անշշուկ, բայց միշտ վեհընթաց, միշտ հզօր ու սիգապանծ նազանքով։ Այլ երբ նոյն գետը յանկարծ կուգայ, կ'հասնի խորխորատի մը վրայ ցցուած գահավէժի մը, կ'սկսի խոյանքն ու վիժումը, մռունչն ու շառաչը քունէն արթնցող ջուրերուն։ Օ՜հ, ի՜նչ փառահեղ ու ի՜նչ ահարկու է վայրէջքն անոր. կարծես նոյն գետը չէ յամրընթաց, հեզամռունջ։ Գիրկ, գիրկ ջուրերու հսկայ զանգուածներ՝ հեղուկ լեռներու պէս՝ վիշապային գալարումներով իրարու վրայ կ'իյնան, փրփրադէզ, խօլարձակ, անդնդայեղց յորձանուտներ կազմելով վարը, ու վերն օդին մէջ զմրուխտ կամարներ, թիւրեղ սիւներ ձեւացնելով։

Այսպէս էր վարդապետութեանց հոսանքը, որ կ'բղխէր Քրիստոսէ։ Ցարդ Անոր խօսքը կ'հոսէր թուփերու մէջ սողոսկող առուակի մը նման լռիկ ու մեղմընթաց, առանց բոյս մը, ծղօտ մը իր տեղէն երերցնելու։ Համոզիչ, թափանձող, փայփայող առակները հանդարտահոս գետին պէս կ'թափին մեր սրտի ծովուն մէջ։ Իսկ երբ նիւթը կ'փոխուի, կ'դառնայ իր մեծափառ վերերեւումին, միւսանգամ Գալստեան, Դատաստանի

տուր եւ անոր յարակից պարագաներուն, յանժամ խօսքը կուգայ, կ'հոսի յոյժ վերերէն ու կ'խուժէ մեր մէջ ջրվէժի մը, սահանքի մը անդիմադրելի ուժգնութեամբ. այնպէս որ կ'փորձուիս չի ճանչնալ խօսողը, ու հարցնել թէ ուստի՞ է այս որոտումը, այս բարկաճայթ փայլատակումը, այս ապառաժները քանդող սաստկաշունչ հողմն ու երկրաշարժութիւնը. որո՞ւն է այս գոռացող, ապառնացող լեզուն, այս հրեղէն բարբառը. —

«Վասն զի ինչպէս որ փայլակն արեւելքէն կ'ելլէ ու մինչեւ արեւմուտք կ'երեւնայ, անանկ պիտի ըլլայ Որդւոյ Մարդոյ գալուստը (վերջին դատաստանը)։ Երկնից երեսը նշաններ պիտի ըլլան. երկրի վրայ աշխութեամբ պիտի տագնապին, ծովն ու ալիքները պիտի գոռան։ Սրտերը պիտի նուաղին իրենց վախէն եւ աշխարհի վրայ գալու բաներուն սպասելէն, ինչու որ երկնից զօրութիւնները պիտի շարժին։ Եւ ան ատեն պիտի տեսնեն Որդին Մարդոյ ամպի մէջ եկած զօրութեամբ եւ մեծ փառքով»։

Ո՞վ ըսաւ, ո՞վ յաւակնութիւն ունեցաւ ըսել այս խօսքերը։ Ու այս հարցումն ընել կարեւոր է հաւատալու համար այն մեծ յայտնութեանց, որոնք հանդերձեալի աղջամուղջին ետեւէն կ'հանուին, կ'բերուին մեզի, եւ որոնց հետքերը մեր տեսութեան, մեր ծանօթութեան սահմաններուն մէջ չեն գտնուիր բնաւ։

Այլ, սակայն, խօսողը մէկ է, ու նոյնը։ Ան է որուն նման մարդ մը չի խօսեցաւ։ Ան է որ չըսաւ, Ես ճշմարտութիւն կ'խօսիմ, այլ «ԵՄ» — «Ես ԵՄ ճշմարտութիւնը»։ Ան է որ ոչ միայն խօսողն էր, այլ նաեւ ԽՕՍՔԸ — «Բանն»։ Ան է որ պատգամ չի բերաւ, յայտնութիւն չըրաւ, բայց Ինք Պատգամն էր, Ինք Յայտնութիւնն էր, անձնաւորուած Յայտնութիւնը։ Քրիստոս Ինք էր Իր խօսքին վկան, Իր վարդապետու-

թեանց, Իր ուսուցած ճշմարտութեանց հաստատութիւնը, ապացոյցն ու իրականութիւնը։ Ինքն էր Իր քարոզութեան նիւթը ու բնաբանը։ Ինքն էր միայն որ իշխանութիւն ունեցողի մը պէս կ'խօսէր, միշտ Իրեն վրայ, Իրեն համար — «ԵՍ եմ. ԻՆՁԻ եկէք»։ Ինքն էր, վերջապէս, ի՛նչ որ կ'քարոզէր — լոյսը, կեանքը, խաղաղութիւնը, անմահութիւնը։ Իրեն դպչողն յաւիտենականութեան կ'դպչէր. զԻնք տեսնողը զԱստուած կ'տեսնէր։ Ան՝ Ինքն, որուն շուրջ ամէն գաղափար, ամէն տեսութիւն ու ամէն հայեացք հալեցան, ինչպէս ձիւները կ'հալին յաւիտենական լեռներուն վրայ։ Ահ, Ան՝ որուն նմանը ամենէն բարձրահայեաց միտքը, եթէ ուզէր, չէր կրնար երեւակայել, ու եթէ կարենար, չի պիտի ուզէր երեւակայել, ըստ Վէն Տայքի։ Ան՝ որ ապաշխարութիւն քարոզեց ու բնաւ չապաշխարեց Ինք։ Ան՝ որ ըսաւ «Ինծի հաւատացէք», նախ ԻՆՁԻ, ու յետոյ Իմ խօսքերուս պիտի հաւատաք։ Ահա Ան ըսաւ թէ «Պիտի տեսնէք Որդին Մարդոյ ամպի մէջ եկած զօրութեամբ ու մեծ փառքով»։ Չէ՞ք հաւատար Անոր — Քրիստոնէութեան կենդանի, ճշմարիտ ու իրական Ապացոյցին։

Ուսերդ մի՛ թօթուեր, ո՛վ թերահաւատ մարդ։ Հաւատքը, եթէ ոեւէ բանի նկատմամբ հաւատքը գոյութիւն ունի աշխարհի մէջ — եւ ո՞վ կրնայ ժխտել զայս — հաւատքը, Քրիստոնէական վարդապետութիւնը, քարոզութիւնն ու կրօնը Քրիստոս է։ Քրիստոս է Քրիստոնէութիւնը։ Ո'վ որ կրնայ ուրանալ Քրիստոս, կրնայ ուրանալ Անոր Աւետարանը։ Ո'վ որ կրնայ ուրանալ Արեգակը, կրնայ ուրանալ լոյսն ու ջերմութիւնը։ Արեւը չունի այնքան ճաճանչ զինք յայտնող՝ քան որչափ Քրիստոս ճառագայթ ունի, որ կ'հռչակէ թէ «Նա է լոյս»։ Քրիստոս, Ինք, Անոր պէս

ո՞վ կայ ճշմարիտ, եւ ի՞նչ կայ իրական։ Ցոյց տուէք փնձ մը, որուն կրնանք վստահիլ, կրնանք յենուլ, որուն կրնանք յանձնուիլ. այնքան մեծ անձնաւորութիւն մը՝ որուն վրայ կրնանք նետել մեր կրօնային հաւատքին բովանդակ ծանրութիւնը։ Ո՞հ, ցոյց տուէք։

Հաւատացէք Անոր, հաւատացէք, ուրեմն, որ դատաստան կայ. հատուցումի օր կայ, լալու կամ արցունքը սրբելու օրը կայ։ Հաւատացէք Անոր, որ պիտի յայտնուի փառօք եւ մեծ զօրութեամբ, որ պիտի գայ դատել զաշխարհ։ Հաւատացէք, քանզի Ինքն այսպէս ըսաւ։

«Եւ յայնժամ տեսցեն զՈրդի Մարդոյ եկեալ ամպովք՝ զօրութեամբ եւ փառօք բազմօք»։ — «Յայնժամ» — այս յաւիտենական բառը կ՚բանայ մեր առջեւ հեռաւոր ապագայ մը, մեր ապագայէն շատ հեռի, որուն քով մեր ապագան «վաղիւ»ն է միայն, մեծ ապագայ մը, քան մեր պզտիկ ապագան։ Ու, ցոյց տալով զայն, կ՚ըսէ մեզ — Ունեցէք ապագայ մը, այլ թող ըլլայ այն մեծ. ոչ ձեր ապագան, այլ Իմս — «յայնժամ»։ Ապրեցէք անոր համար, ապագայի մը համար, որ արժանի ըլլայ ձեր մեծ մտքին, մեծ կեանքին. զի պզտիկ ապագան մեծ մարդուն համար չէ, եթէ մարդ ըսելով չի պիտի հասկնանք մարդուն մէկ մասը, կամ անոր ունեցածը. այլ մարդը, զինք. ան՝ որ բարձր իմաստով կ՚կոչուի ՄԱՐԴը։ Ու «այսօր»ն եւ «վաղ»ն շատ նեղ, պզտիկ սահման մ՚են հոգւոյն համար։ Աշխարհ մը ժամանակին բաւական չեղաւ զինուորի մը — Աղեքսանդրի — համար, ու այն բաւական չէ մարդու մը համար, որու կեանքի ընդարձակութիւնը աստուածութիւն մը կ՚ընդգրկէ։ Մարգարէները ու բոլոր մեծ հոգիները յաւիտենական ապագայի արեւին մէջ շնչեցին ու ծաղկեցան։ Եւ Քրիստոս Իր բանաւոր հօտը — Իր Ս. Եկեղեցին — անոր լուսափառ հո-

բլուրին ներքեւ կառոյց։ Ո՛չ, ո՛չ, մեր կեանքը չի կրնար փակուիլ օրուան մը նեղ արգելարանին մէջ։ Անհոգի արեւը յոյժ աւելի երկարատեւ կեանք ունի։ Այլ ես մեծ եմ անկէ, այնու զի սահմանուած եմ անկէ աւելի՝ ցյաւիտեան ապրիլ։ Միայն ներկայ բաները չեն որ մարդուն հարստութիւնը կ'կազմեն, մարդուն փառքն ու կեանքը կ'չինեն. այլ այն բաներն՝ որոնց սովոր է ըսել Գիրքը «գալոց են»։ Մարդուս հոգին պէտք է վերածնի, պէտք է հրեշտակային մարմին ու անմահութիւն զգենու օր մը, որ կ'կոչուի «յայնժամ»։

Մի՛ կարծէք թէ **կրօնքին բանաստեղծութիւնն** է այն, — Աւետարանի սոյն ընթերցուածը, Քրիստոսի այս ասացուածը։ Ո՛չ, իրականութիւնն է այն իրողութեան։ Եւ ի՞նչ է ճշմարիտ բանաստեղծութիւնը, բայց եթէ իրականութեան փթթումը, իրողութեան ծաղկումը, պատմական ճշմարտութեանց գեղազարդումը։ Ըսէք ինծի, սուտ բանաստեղծութի՞ւն է ըսել սերմի մը կամ արմատի մը համար թէ ասոր մէջէն զօրութիւն ու ձեւաւորումներ յառաջ պիտի գան, ծիլ ու ծղօտ պիտի ընձիւղին, ծաղիկ պիտի բացուի — յայտնութիւն մը ինքնին — տերեւախիտ ճիւղեր պիտի աճին ու տարածուին օդին մէջ․ թռչուններ անոնց ծոցին մէջ պիտի թռչտին ու ճռուողեն, եւ մարդիկ օրուան տապէն խոնջեալ պիտի գան ու հանգչին անոնց թաւերու ու թեւերու զով հովանիին տակ։ Բանաստեղծութի՞ւն է այս։ Եթէ մենք երբէք տեսած չըլլայինք ի՛նչ որ իրապէս յառաջ կու գայ արմատէ մը կամ սերմի հատիկէն, իսկոյն պիտի գոչէինք — Անըրջայի՜ն, բանաստեղծակա՜ն, ռոմանթի՜ք, եւայլն։ Այլ նա, որ սերմը կ'երգէ այս ոճով, բանաստեղծ մը չէ որ աշխարհներ կ'ստեղծագործէ սուտ բառերով։ Գիտունն է ան, պատմագէտը, փիլիսոփան, ու բոլոր տրամաբանողներու իշխանը։

Չի խորշինք ապագայէն, չի թուլուինք «հակ-անդրշիրիմեան» գաղափարներէն, որոնց համար ինքն, Ռընան, ըսաւ թէ «Կ'վախնամ որ 20րդ դարուն գործը պիտի ըլլայ դուրս թափել աղբի թիթեղէն այն երեւելի գաղափարներէն խիստ շատերը, զորս 19րդ դարն անոր մէջ նետեց»: Մի՛ արհամարհէք հանդերձեալը՝ վիպական, երեւակայական, բանաստեղծական անուանելով զայն: Երազանք չէ տեսնել սերմին մէջ փթթումն հունձքի բանաստեղծութեան: Ընդհակառակը՝ չունի թափանցող միտք, դիտող աչք նա, որ սերմին մէջ սերմը կ'տեսնէ միայն, ու արմատին մէջ՝ փայտը, ներկային մէջ՝ «այսօր» միայն:

Մեր տեսութիւնն ապագայի մասին՝ պէտք է Քրիստոսէ ընդունիլ: Քրիստոսի աչօք եւ Անոր տեսակէտէն պէտք է նայիլ հանդերձեալին: Այս աշխարհի եթերն ու հիւլէն, կաւն ու փոշին չի կազմեցին Անոր Աստուած հոգին: Արդիւնքները չի յղացան, չի գծեցին Անոր բարոյական պատկերը. չէին կրնար: Ու եթէ կարենային, ո՛չ վրձինը, ո՛չ ներկը ու ո՛չ մէկ տարրը կ'գտնուէր յաստիս, մահկանացուներու բնագաւառին մէջ: Հանդերձեալէն եկաւ Ան: Քրիստոս ապագան էր, մարմնացումն հանդերձեալին, անձնաւորեալ յաւիտենականութիւնը ու անմահութիւնը: Ապագայ չի կար Անոր համար՝ գաղտնիքի, մթութեան ամպի, մշուշի ու քաոսի իմաստով: Յաւիտենականութեան մէջ կ'քալէր, ու ապագայ խորանին մէջ կ'բնակէր: Օ՜հ, մտէք այդ ժամանակի պաւիթէն ներս, յաւիտենականութեան Սրբութիւնը ու անվերջ կեանքի Սրբութեանց Սրբութիւնը: Եւ հոն, անշէջ աշտանակի լոյսին տակ, կեանքը պիտի լուսաւորուի, գեղեցկանայ, սրբանայ, երջանկանայ, մեծնայ ու փառաւորուի:

Վա՜յ անոր որ յոյս ունի միայն այս կեանքի մէջ ու

այս կեանքին համար ։ Վա՛յ անոր որ իր կեանքին համար պզտիկ ծրագիր մը միայն ունի, որուն երկու սահմանագծերն են **այսօր** ու վաղը ։ Թշուառ ու պզտիկ կեանք է այն. արգահատանք անոր ։ Վա՛յ անոր որ կ՚ապրի միայն ներկային համար, որպէս թէ չի կայ հունձքի օր մը, երբ յարդը ցորենէն պիտի ընտրուի, ու անարժէք, անպիտան հոգիները պիտի դատապարտուին վիճակի մը, որուն մահ կամ դժոխք անունը միայն կ՚վայելէ ։

Ոհ, մի՛ կարծէք թէ միայն ներկան է իրական ։ Անտեսանելի բաներն են որ յաւիտենական են ։ Աստուածաբանական հայեցողութիւն մը չէ այս ։ Խորունկ գիտութեան ու փիլիսոփայութեան յայտնութիւնն է այն ։ Ժամանակին սրարշաւ հոսանքը կ՚տանի մեզ դէպի աւելի հաստատուն եւ աւելի իրական, մշտատեւ աշխարհ մը, ուսկէ պիտի դիտենք որ երեւոյթներ ու ստուերներ են ի՛նչ որ **իրեր** կ՚անուանենք այսօր, եւ որոնց անհետացումը պիտի տեսնենք. Թէ հաւատանք եւ թէ ոչ, բայց **պիտի տեսնենք**. — «Ու **պիտի տեսնէք** Որդին Մարդոյ ամպի մէջ եկած զօրութեամբ եւ մեծ փառքով» ։

«Ուրեմն արթուն կեցէք, զի չէք գիտեր թէ ո՛ր ժամուն ձեր Տէրը կուգայ» ։

Ժամանակ կուգայ, ու այս կեանքիս մէջ, յորում պիտի հաւատանք, թերեւս, ու ըմբռնենք այն խօսքերը, որոնց համար ըսաւ Յիսուս իր անբաւ հեղինակութեամբ — «Իմ խօսքերս», եւ որոնց համար ըսաւ, «հոգի ու կեանք են» ։ Ցորչափ երկինք պայծառ ու պարզ է, ու մեր ճամբուն վրայ յաջողութեան ծաղիկներ սփռուած են, ցորչափ առողջութիւնը կատարեալ է եւ կեանքը՝ հեշտին ու ժպտուն, գուցէ կրօնքը ստուերային թուի ու ոչ իրական ։ Սակայն երբ թռչող հարուածը, որոյ ընթացքը չենք կարող կասեցնել, կուգայ, կ՚իյնայ,

վերջապէս, մարդուն գլխուն գագաթին վրայ, երբ Տէրն ուտող, արբեցող ծառային, որ ծաղրեց Անոր գալուստը ըսելով «Իմ տէրս իր գալուստը ուշացուց», երբ Նա կուգայ գիշերուան անսպասելի մէկ ժամուն մէջ, երբ այս պաշտեցեալ աշխարհը գալարուն մղեղի պէս կ'անցնի ահեղ անցքով մը՝ ամէն աչաց ցանկութիւննե-րու հետ, կամ կեանքը հրաժեշտ կուտայ անոնց, ո՛հ, երբ յուսախաբ մարդը միամինակ կ'մնայ մահուան սար-սուռին մէջ, ու անօգնական կ'տարուբերի անոր մուայլ, անստոյգ կոհակներուն վրայ, յանժամ, այո, յայնժամ իրերն իրենց քօղարկեալ երեւոյթէն դուրս կ'յայտնուին մեզի՝ ճիշտ ինչպէս որ են։ Յայնժամ կ'տեսնենք իրերու ներքին կողմը, կ'տեսնենք իրերը։ Աշխարհի փորձու-թիւնք դէմ առ դէմ կ'բերեն մարդը Աստուծոյ — Աստ-ուած եւ մարդ իրարու կ'դպչին։ Ամպի թեթեւ վարա-գոյրը, որ կ'կախուէր ընդ մէջ անոր ու երկինքին, կ'ցնդի, կ'ցրուի ի բաց, եւ նա աշխարհի սեմէն դուրս ոչինչ կ'գտնէ իր եւ յաւիտենական անսահմանութեան մէջ։

Ցիրաւի, ըսէք, չի կա՞յ բան մը հիւանդութեան անկողնին մէջ, ցաւած, խոցուած ու դառնացած սրտին մէջ, անհանգիստ ու խռովեալ միտքին ու խորտակուած առողջութեան մէջ մարմինին, բարեկամաց վաղանցուկ համակրութեան եւ թառամած, թոշնած սիրոյ յուսա-խաբութեան զգացումին մէջ, եւ, վերջապէս, իր ակէն թունաւորուած կեանքի հոսանքին մէջ։ Ո՛հ, չի կա՞յ բան մը հզօր, երկնային ազդեցութիւն մը, հրեշտակ մը, գուցէ, որ բռնադատէ մեզ ըմբռնել, ճանչնալ, զգալ թէ ո՛րն է իրականը ու ո՛րն է ոչ—իրականը։

Ժամանակին ամենէն յառաջդիմականները կ'սիրեն կոչուիլ «ապագային զաւակ»ները։ Այլ ո՞վ երբէք աւելի իրաւունք ունի կոչուիլ «հանդերձեալի զաւակ»ներ, «յու-

սոյ որդի»ք քան ձեզ, ո՛վ քրիստոնեայ հոգիներ։ Յառաջացէք այդ ուղիին մէջ մինչեւ որ հոգեւոր հաւատքը տեսութեան փոխուի։

Մի՛ արհամարհէք յաւիտենական կեանքի գաղափարը։ Քրիստոսի կեանքն է այն, որ հոս հաւատացեալին կեանքին մէջ կ'անկուի ու կ'ծլի, կ'ընձիւղի անվախճան տեւողութեան մէջ, ու բնաւ չի մեռնիր։ Աստուծոյ կեանքն է այն։ Առանց հանդերձեալ կեանքի տեսլականին՝ մարդ զուրկ է իրական բարձրացումէ, ճշմարիտ ազնուացումէ։ Առանց յաւիտենականութեան հաւատքին՝ չի կայ մեծութիւն։ Սպասեցէք «գալստեան» Տեառն։ Սպասող հոգին արթուն ու բարի հոգին է։ Մեծ կեանք այն է, որ ակն ունի դատաստանի աւուր եւ միւսանգամ գալստեան Անոր, որ կ'կոչուի Որդին Մարդոյ։

# ԾԱՂԿԱԶԱՐԴ

Ծաղիկներ սփռեցէք Անոր ճամբուն վրայ ։ Մշտադալար արմաւենիներու ոստեր թափեցէք ։ Փառքի ու շուքի հանդերձները տարածեցէք Անոր ոտից տակ ։ Ծաղկազարդեցէք, փառազարդեցէք Անոր գնացքը, որ կուգայ հեզութեան վրայ նստած, ու խոնարհութիւնը Իրեն կառք ըրած. Նա՝ որ ամպերու վրայ կ՚բազմի, քերովբէից թեւերով կ՚թռչի, ու հողմոց թռիչներուն վրայ կ՚սլանայ։ — «**Համբարձէք, իշխանք, զդրունս ձեր ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից, եւ մտցէ Թագաւոր փառաց: Ո՞վ է սա Թագաւոր փառաց, Տէր զօրութեանց: Սա ինքն է Թագաւոր փառաց**» ։ Եւ դուք, ո՛վ դռներ, գլուխնիդ վեր վերցուցէք ։ Բացուեցէք, ո՛վ մարմնեղէն դռներ, որ մեր սրտերը կ՚փակէք ընդդէմ Անոր — խաղաղութեան եւ փրկութեան Իշխանին ։ Անցք տուէք, ո՛վ հպարտութեան պարիսպներ ։ Ճամբայ բացէք, ո՛վ անձնասիրութեան, հեշտութեան, աշխարհիկ ու նիւթական կեանքի պատնէշներ ։ Թող գայ Ան, որուն թագաւորութիւնը կ՚կոչուի «արքայութիւն երկնից» ։ Ո՛վ Սիօնի դստերք, եթէ աշխարհի որդիք կ՚մերժեն զԱնիկա, կ՚անտեսեն Անոր այցը, բայց դուք, մանկունք Ս. Եկեղեցւոյ, ընդ առաջ՝ելէք Անոր, եւ աղաղակեցէք, «Ովսա՜ննա Բարձրելոյն, օրհնեա՜լ որ գայդ յանուն Տեառն»։

ԹԱՓՈՐԸ

Եկէք, դիտենք սա հանդիսաւոր թափորը ։ Պատմութիւնը արձանագրած չէ սոր նման տարօրինակ

անցք մը, ու մարդկութիւնը հանդիսատես եղած չունի այսքան յաղթապանծ գնացքի։ Հարցուցէք ո՛ւր կ՚երթայ այս Գալիլիացի մարդը՝ իշխանաբար, ժողովրդային խանդավառ ցոյցերու եւ մեծագոչ աղաղակաց մէջ, ի՛նչ որ բացառիկ երեւոյթ մ՚է Իր կեանքի բոլոր պարագայից մէջ։ Նա կ՚գնայ Երուսաղէմ։ Եւ ինչո՞ւ։ Զատկի չքեղ հանդէսնե՞րը դիտելու, զոհի ու պատարագի սրբազան պաշտօններո՞ւն հանդիսատես ըլլալու։ Ո՛չ. Ինք հանդէս ըլլալու. Ինք զոհ ըլլալու. Իր անձը պատարագելու. յօժարակամ մեռնելու համար։ Զարմանալի, անօրինակ չէ՞ք գտներ այս կերպ մուտքն Անոր յԵրուսաղէմ, ուր Իրեն համար խաչ ու գերեզման կ՚պահուէին։

Ո՜հ, ո՞վ այսքան արագ եղած է իր պարտականութեան ճամբուն վրայ։ Ո՞վ այսքան կարօտիւ ու հաճութեամբ գրկած է իր խաչը, կառչած է մահուան։ Երուսաղէմ ու յաղթական մուտք, խաչ ու ցնծագին գալուստ, մահուան հառաչանք ու «ովսա՜ննա». ի՜նչ աններդաշնակ ներդաշնակութիւն — երկու անհամապատասխան թելեր՝ որ Յիսուսի կեանքին վրայ կ՚համաձայնին ու կ՚յօրինեն ամենէն աղու ու սրտառուչ նուագը։

ՍՐԲԱԶԱՆ ՀԱԿԱՍՈՒԹԻՒՆԸ

Նոյն հակադիր եզրերը, սրբազան հակասութիւնը ու գեղեցիկ աններդաշնակութիւնը յերեւան կուգան ուրիշ պարագայի մը մէջ՝ սոյն մեծահանդէս մուտքին առթիւ։

Մի պահ առաջ Տէրն մեր Իր աշակերտներէն երկուքը կ՚ղրկէր գիւղը Իրեն բերելու համար էջ մը ու աւանակը։ Նա գիտէր մինչեւ իսկ ո՛ւր էին կապուած այն կենդանիք, ո՛ւմ կ՚վերաբերէին. գիտէր ի՛նչ պիտի հարցուէր աշակերտաց, եւայլն։ Զարմանալին հոս է, սակայն. մինչ նա գիտէ ամէն ինչ, միեւնոյն ատեն կ՚ըսէ. «Եթէ ոք հարցանիցէ զձեզ թէ ընդէ՞ր լուծանէք, այսպէս ասասջիք ցնա թէ Տեառն իւրում պի-

*տոյ է» ։ Նա կ'խօսի Իր վրայ իբրեւ մէկը, որ պէտք ունի, «պիտոյ է» ։ Գիտնալ ամէն բան եւ խոստովանիլ իր անհատական պէտքը, եզական երեւոյթ մը չէ՞ այս ։ Այն գլուխը, որ ամէն գիտութիւն եւ իմաստութիւն կ'պարունակէր, տեղ մը չունէր դնելու ։ «Տեառն» եւ «պիտոյ», մէկ նախադասութեան մէջ, ինչպէս կ'ընդգրկեն զիրար, կ'հաշտուին ։ Այսպիսի տարօրինակ՝ այլ վսեմ խառնուրդներ, այսօրինակ ապշեցուցիչ միաւորումներ միայն այս ՄԱՐԴուն խօսքին ու կեանքին մէջ կարելի է գտնել ։ Նա Իր մեծութիւնը, Իր վեհաշուք հանգամանքը չի կորսնցներ, թէեւ կարօտութիւն կ'յայտնէ. ոչ ալ իր «Տեառն»ութիւնն անհրաժեշտ կ'զգայ փրկելու զինք «պիտոյ»էն։ «Տեառն» ու «պիտոյ» ձեռք ձեռքի տուած կ'ընթանան ճամբուն մէջ ։*

*Տէ՛ր, — ու հեծնելու համար աւանակի մը իսկ կ'կարօտէր ։ Ո՜հ, ուրեմն, ինչպէս Տէր է Ան. — Ան Տէր է Իր նպատակի գերազանցութեամբ, Իր խորհուրդի վսեմութեամբ, Իր հոգիի բարձրութեամբ, Իր սրտի սրբութեամբ, Իր սիրոյ անսահմանութեամբ եւ Իր քահանայագործումի, պատարագումի, ինքնազոհութեան անըմբռնելի վեհութեամբ, տիրական փառօք ։ Այս է արքայականը, այս է տիրականը Քրիստոսի ։*

## ՔՐԻՍՏՈՍԻ ԽՆԴԻՐՔԸ

*«Ասասջիք ցնա թէ Տեառն իւրում պիտոյ է» ։ Ամենակալն Քրիստոս յօժարակամ աղքատացաւ, կարօտ եղաւ մեզի որ մեզմով փառաւորուի ։ Իր նէյին յառաջ բերաւ նոյն խորքին կարօտը ։ Անոր անհրաժեշտ պէտքը լրացած չէ դեռ ։ Նա Իր հոգեւոր պետութիւնը կ'ուզէ ծաւալել մեր մէջ ։ Անոր աշակերտներն ամէն օր կ'բաղխեն մեր սրտի դռները — «Տեառն իւրում պիտոյ է» ։ Օ՜հ, ղրկեցէք Անոր, այլ ո՛չ թէ ձեր անասունները, ո՛չ թէ ձեր արծաթն ու ոսկին, այլ նուիրեցէք . . . զձեզ, ձեր*

անձերը ։ Այս է Քրիստոսի խնդիրքը ։ Գուցէ յօժարէինք տալ Անոր ի՛նչ որ ունինք, բայց Նա կ'պահանջէ զմեզ ։ Նա կ'փնտռէ մեզ, ոչ թէ մերինը. զի ունենալով մեզ՝ կ'ունենայ եւ ի՛նչ որ մերն է ։ Կ'ուզէ նախ ձեռքը, յետոյ՝ ձեռքին ընծան. տուողը՝ յառաջ քան տուրքը ։ Ուրեմն, արձակեցէք ձեր անզուսպ կիրքերը, աւերիչ ցանկութիւնները, կեղտոտ բնութիւնը, ու զրկեցէք Տեառն Թող Ան Նստի անոնց վրայ ու վարէ ըստ հաճոյս ։ Մի՛ արգիլէք, թող տուէք որ Անիկա Իր իշխանութիւնը տարածէ ձեր սրտի սեփականութեան մէջ, Իր սիրոյ մականով կառավարէ ձեր զգացումները, ձեր միտքն ու սիրտը, ու տիրապետէ ձեր սիրոյն վրայ ։ Հանեցէք ձեր մնափառութեան հանդերձները, փռեցէք Անոր ճամբուն վրայ ։ Նետեցէք Անոր ոտից տակ ձեր սրտերու ցանկալի, սիրելի կուռքերը ։ Թող ամենուն վրայ կոխէ, անցնի Ան — բարձրագոյն վայելքը, իրական սէրն Անոր։ Եթէ ոչ, եթէ կ'մերժէք խնդիրքը օրհնեալ Քրիստոսի, եթէ արգելամբ կ'դժկամիք Անոր մուտքին ձեր հոգեկան տաճարը, ուրեմն միայն շրթամբ կ'ըսէք, «ովսա՛ննա» ։ Ուրեմն կ'կեղծէք ։

ՔՐԻՍՏՈՍԻ ԱՐՑՈՒՆՔԸ

Տէրն մեր սոյն հանդիսաւոր գնացքով կ'մօտենար Երուսաղէմի ։ Ու երբ Ձիթենեաց Լերան զառ ի վայրն հասաւ, հեռուէն յանկարծ ի տես եկաւ քաղաքը, որ թագուհապէս կ'սիգար արեւուն սպիտակ, լուսեղէն պատմուճանին տակ ։ Մարմարեայ աշտանակներու, ոսկեծղի գագաթներու եւ տաճարին փայլուն, փաղփուն երեւոյթով արբշիռ բազմութիւնն սկսաւ ուրախութեան աղաղակներով օդը թնդացնել, այլ Ս. Աւետարանիչը կ'ըսէ, «Ու երբոր մօտեցաւ, քաղաքը տեսնելով լացաւ անոր վրայ» ։ Ահա այս արտօսրի հոսումն է Յիսուսի, որ աւելի հրաշալի, աւելի յափշտակիչ տեսարան մը

կ՚պարզէ մեր առջեւ. — «Տեսեալ զՔաղաքն, եւլաց ի վերայ նորա»։ Որքան տարբեր են տեսութիւնք Անոր ու մարդոց։ Անոնք հոյակերտ քաղաքը տեսան, այլ Ինք՝ դէզադէզ աճիւնները անոր աւերակաց։ Անոնք տաճարին գեղեցիկ քարերը տեսան, այլ Ինք՝ անոնց անկումը։ Մենք մեր ներկային կ՚նայինք ու անկէ կ՚ազդուինք։ Ան իրերու վախճանը կ՚տեսնէ ու ըստ այնմ կ՚ազդուի։ Ո՜հ, այս արցունքի շիթերը. կ՚ապշիմ, կ՚յուզուիմ, կ՚արտասուեմ այդ արցունքին վրայ, որ Աստուծոյ մը արցունքն է։

Նա չի լացաւ Իրեն համար. երբէ՛ք։ Երբ ըսաւ աշակերտաց՝ Որդին Մարդոյ կ՚երթայ մատնուելու, նախատուելու, խաչուելու ու մեռնելու համար, խոնաւութիւն մը չզգացուեցաւ Իր աչքին մէջ, այլ երբ քաղաքը տեսաւ, լացաւ։ Կրկնեցէք այս բանաձեւը. — Երբ զՆա դատապարտեցին, չարչարեցին, չի լացաւ, բայց Երուսաղէմի համար լացաւ — այն ապերախտ քաղաքին համար՝ որ իր Փրկիչը անգթօրէն, գազանաբար պիտի սպաննէր։ «Քաղաքը տեսաւ ու լացաւ»։ Ըսէք, մարդիկ եղբայրներ, մարդկային աչքէ մը հոսա՞ծ է սանկ արցունք. աւելի վերէն չի՞ հոսիր այն. Աստուծոյ Որդւոյն արտօսրին չի՞ նմանիր։

Նա ձեր վրայ եւս կ՚արտասուէ, ո՛վ անուամբ քրիստոնեայք, ո՛վ խստացած սրտեր։ Նա ձեր վրայ եւս կուլայ. ձեր ինքնապաշտ կամքին, ձեր կեանքի պղտիկ, ազեղ նպատակներուն եւ ձգտումներուն վրայ, որոնց ցաւալի վախճանը կ՚տեսնէ հեռիէն։ Նա գիտէ թէ այն փայլուն, փորձիչ իրերը, որոնք ձեր հաճոյքը կ՚կազմեն այսօր, մահ կ՚գործեն ձեր յաւիտենական էութեան, կ՚փճացնեն ձեր նկարագիրը ու կ՚փորեն ձեր գերեզմանը։ «Քաղաքը **տեսնելով** լացաւ անոր վրայ»։ Ուրիշներ ալ կ՚տեսնէին զայն, բայց չէին տեսներ։ Ինք էր

որ կ'տեսնէր քաղաքը, զի կ'տեսնէր անդունդը, որ անոր ներքեւ բացուած էր, զի կ'տեսնէր անոր ապագան. կ'տեսնէ՛ր։ Ոչ ոք Անոր պէս տեսաւ։ Անիկա աղէտքը կ'տեսնէ ու կուլայ։ Մի՛ ծիծաղիք, երբ Նա կուլայ։ Այս արցունքն օր մը խստապարանոց ժողովրդին համար շանթ եղաւ, ու ինկաւ, սպառեց զայն իր ցանկալի, պանծալի քաղաքին հետ։ Ու մինչ Նա կուլայ այսօր, Անոր արցունքը նոյն ազդեցութիւնն ունի մեր վրայ։ Եթէ այն չի հալեցնէր մեր քար սրտերը, կրակի ու կայծի կ'փոխուի ու կ'այրէ մեզ։ Ի՜նչ սոսկալի է հոգւոյն ապագայ աղէտքը, որուն համար Յիսուս կուլայ։ «Երանի՜ թէ ճանչնայիր քու այցելութեանդ օրը, գոնէ այս քու օրուանդ մէջ գիտնայիր խաղաղութիւնդ»։ «Գիտնալ» ու «ճանչնալ», սոսնք գերազանց են քան ամէն գիտութիւն։

Թողէք որ կրկնենք, թողէք որ դարձեալ եւ դարձեալ հնչեցնենք նոյն տխուր թելը, նոյն ցնցող, սարսռող թելը. — Նա որ հարուածներու ներքեւ չի լացաւ, «այլ քաղաքը տեսնելով լացաւ անոր վրայ»։ Հանդէպ այս արտասուքին՝ յամառիլ, մնալ մեղքի ու մոլար ճամբաներու մէջ, դիմադրել Անոր, անտեսել զայն — Աստուծոյ արցունքը, յորում այնքան խորունկ նշանակութիւն կ'պարունակուի՝ որքան խորունկ սէր. — Ո՜հ, արհամարհել այս արցունքը, կ'սոսկամ։ Անըմբռնելի, անբացատրելի գաղտնիք մը կ'դառնայ ինծի մարդկային խստութիւնը։ Անզեղջ սրտի մը, անդարձ հոգիի մը յիմարութիւնն ու կուրութիւնը դիւական, ճիւաղական բան մ'են։ Յիրաւի ի՜նչ խորունկ է մարդուն անկումը։ Ի՜նչ, չէ՞ք հաւատար դժոխքի։ Հաւատացէք, սակայն, որ այս արցունքն անապաշխար մարդուն յաւիտենական դժոխքը պիտի կազմէ։

## ՄՈՒՏՔՆ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

Յառաջանանք, քայլ մը եւս, եւ ահա Երուսաղէմի հսկայ պարիսպներէն ներս կ'թեւակոխենք. — «Ու երբոր Անիկա Երուսաղէմ մտաւ, բոլոր քաղաքը շարժեցաւ ու ըսաւ, Ո՞վ է սա»։ Ան ո՛ւր որ կ'երթայ, յուզում յառաջ կուգայ։ Երբ Նա առաջին անգամ Իր ոտքը դրաւ մեր մոլորակին վրայ, Հերովդէս ու բոլոր Երուսաղէմ խռովեցան։ Անիկա բարոյական տիեզերքին կեդրոնն է, Արեւն է արդարութեան։ Կարելի՞ է որ աննշմարելի անցնի Անոր շարժումը, ուրկէ կախում ունի բոլոր հոգեկան դրութիւնը։ Նա երբ կուգայ, մուտ կ'գտնէ սրտիդ մէջ, հոն ա՛լ վրդովումը կ'ծնի։ Հին ունակութիւններ, հինցած ախորժակներ իսկոյն բողոք կ'բառնան։ Առիւծը կ'արթննայ, հոգեւոր պայքարը կ'սկսի Իրեն եւ խաւարին միջեւ. — «Ո՞վ է սա»։

Հարցուցէք, «Ո՞վ է սա»։ Ամենամեծ հարցումն է այդ, կեանքին հարցն է։ Ան տակաւին աշխարհի «գըլորման վէմն է»։ Ան՝ այս, որուն շունչը կ'անցնի մարդոց սրտին ու մտքին վրայ ու կ'ալեկոծէ զանոնք։ Կեանքերու մէջ կ'մտնէ անհատներուն, եւ կ'յեղաշրջէ զանոնք. սրտերու գանձը, սէրը, կուռքը կ'դառնայ։ Մարդիկ Անոր վէրքն իրենց ցնծութիւնը կ'ընեն։ Անոր ամօթի, տառապանքի, նշաւակման խաչն իրենց փառքը կ'նկատեն։ Անոր փուշերն իրենց գլխուն պսակ կ'դնեն։ Անոր համար մեռնիլը կեանք կ'համարին։ Անոր ցաւի• զոհի կեանքն ապրիլ կ'ուզեն, քան վայելքի ու պերճանքի կեանքն աշխարհի։ Օ՜հ, մի՛ հարցնէք, եթէ կ'ուզէք, թէ ո՛վ են այս կրօնի վարդապետներ, ինչ են, ինչպիսի բաներ են սա վարդապետութիւնք, եւայլն։ Հարցուցէք, սակայն, կ'աղաչեմ, «Ո՞վ է այս ՄԱՐԴը, այս պատմական, իրական Մարդը. ո՞վ է այս ապրուած կեանքը»։ Թող ամէն բան սուտ ըլլայ, բայց այս Անձն

ո՞վ է, որուն պէս իրմէկան բան չի կայ ։ Մեծութիւն չէ այդքան արհամարհող ըլլալ . մեծերը խոնարհ կ՚ըլլան ու կ՚անանեն, կ՚դիմեն ։ Տեսէք, ուրեմն, սա խուզումի, յափշտակութեան Մարդը ։ Կ՚արժէ ճանչնալ զԱնիկա ։ Անոր պէս մէկը չի կայ ։ Լաւ դիտեցէ՛ք Անոր պատկերը, ու ապա հարցուցէք յանժամ — «Ո՞վ է ան» ։

Տեսէք որ Նա կրօնի հիմնադիր մը չէ, ոչ ալ ատեն ուսուցիչ մը բարոյականի ։ Կորսուած մարդկութիւնը չի կարօտիր ուսուցչի ։ Աշխարհ շատ ու շատ հանեց ուսուցիչներ եւ վարդապետներ, որոնք զինք դէպի անդունդ առաջնորդեցին յաճախ ։ Մարդիկ թշուառ են, թէ՛ զգան, թէ՛ ոչ, իրենց բոլոր տապնապներ ու հետապնդումներ յուսահատ փնտռտուքներ են լաւագոյն կեանքի մը ։ Մարդուն սիրտը պժգոտ է, հոն ցաւը կայ միշտ ։ Մարդուն ժպիտը կեղծ է, խնդումը՝ սուտ ։ Ու այս ամէն դժբաղդութիւնք, այս սեւ ճակատագիր ծնունդ կ՚առնեն մէկ իրողութենէ մը, որ մեղք կ՚կոչուի ։ Մարդուն կարօտութիւնը մէկ է — ազատում մեղաց գերող ազդեցութենէն ։ Մարդկութիւնը, ուրեմն, կ՚կարօտի մէկու մը, որուն անունն ըլլայ Յիսուս-Փրկիչ ։ Խղճուող մարդն ո՛չ խրատի, ո՛չ վարդապետութեան կամ վարդապետի, ո՛չ ճառի կամ ճառախօսի եւ ո՛չ ալ բարոյախօսի կ՚կարօտի ։ Փրկարար ձեռք մը կ՚փնտռէ ան իր մահուան ճգնաժամին մէջ ։ Եւ այս Գալիլիացի Մարդն Ան է, — Փրկիչը ։ Ան Յիսուս մարգարէն չէ, «վարդապետ»ն չէ, ինչպէս կ՚կարծէին ազէտ Հրեաներ, այլ՝ Յիսուս Փրկիչը ։

Եւ ուստի հարցուցէք անոր, որ Յիսուսը Փրկիչ կ՚դաւանի ու կ՚պաշտէ, զի ուրիշ ոչ ոք իրաւունք ունի խօսիլ Անոր վրայ ։ Հարցուցէք անոր, թող ան վկայէ թէ Նա փրկիչը չեղա՞ւ իրեն, չազատեցա՞ւ մեղքի անողոք բռնապետութենէն, չի բացուեցա՞ւ աչքը, չի բուժ-

ուեցա՛ւ հոգին ։ Այս է Քրիստոնէութիւնը, — ճանչնալ զՔրիստոս, հաւատալ Անոր ու փրկուիլ ։ Քրիստոնէութիւնը բարոյական դրութիւն մը կամ կրօնական տեսութիւն մը չէ, զոր պէտք է դաւանիլ, այլ՝ փրկարար ԱՒԵՏԱՐԱՆ մը, զոր պարտինք ընդունիլ ։ Եւ այդ Աւետարանին մէջ բովանդակուած Աւետիսն է — «Ձեզի այսօր ՓՐԿԻՉ մը ծնաւ» ։ Քրիստոս Աստուծոյ աշխարհին է ։ Քրիստոս տիեզերքին է, որուն մէջ կ՚շարժի քրիստոնեան։

Քանի մը քայլ եւս հետեւինք, ուրեմն, մեր Փրկչին ։ Վերջին ակնարկ մ՚ալ ձգենք Անոր վրայ

## ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ

Մանուկներու բարձրագոչ աղաղակը — «Ովսա՛ննա Որդւոյ Դաւթի» — բարկութեան կ՚գրգռէ դպիրներն ու քահանայապետները, որ կ՚ըսեն Իրեն, «Կ՚լսե՞ս, ինչ կ՚ըսեն ասոնք» ։ Որպէս թէ չի լսեր Ինք ։ Ու Յիսուս կ՚պատասխանէ անոնց, «Այո, բնաւ չէ՞ք կարդացեր թէ մանկանց ու կաթնկեր տղոց բերնէն գովութիւն կատարեցիր» ։ Ինչ կծու յանդիմանութիւն անոնց, որոնց պաշտօնն ու զբաղումն է սորուիլ ու մեկնել օրէնքը ։ «Չէ՞ք կարդացեր» . — Կարդացեր էին, բայց՝ ո՛չ ։ Շատեր կ՚կարդան ու չեն կարդար ։ Կ՚լսեն ու չեն լսեր . ինչպէս նաեւ կ՚տեսնեն ու չեն տեսներ ։ Չի տեսնողները տեսան, ու տեսնողները կուրցան ։ Չէ՞ք տեսներ, չէ՞ք իմանար որ դիպուածական բաներ չեն այս ամէնը ։ Դարեր առաջ գուշակուած, ծրագրուած են, եւ ահա յաչս ամենուն փառաւոր կերպով տեղի կ՚ունենայ «լրումն օրինաց եւ կատարումն մարգարէից» ։ Կոյրե՛ր, չէ՞ք տեսներ ։

«Չէ՞ք կարդացեր» . — Ու այս յանդիմանութիւնը կ՚ուղղէ անոնց, որ կարդացող են, որ ուսեալ են, որ վերերէն կ՚նային հասարակ արարածներու վրայ ։ Մի՛ կարծէք թէ կարդացեր էք, ո՛վ աշխարհի կարդացող-

ներ, ո՛վ Հոմէրի, Վիրգիլի, Պղատոնի, Շէյքսփիրի եւ այլոց սիրահար ընթերցողներ։ Կարդացե՞ր էք զԱնիկա, որ ներշնչողն է բոլոր գրողներուն, որ Ինք երբէք ներշնչուած չէ ուրիշէ մը, որ Ինք Իր ներշնչումն է եղած։

Կարդացե՞ր էք այն գիրքը, գիրքերուն գիրքը, զոր Քրիստոս գրեց։ Ու գիտէ՞ք ո՛րն է այն գիրքը. — Իր ԿԵԱՆՔՆ է, Անոր կեանքի գիրքը։ Անոր գիրքը, Անոր Աւետարանը Իր կեանքն էր։ Ան չէր գրեր, բայց Կ՚ԱՊՐԷՐ։ Անիկա չապրեցաւ ի՛նչ որ քարոզեց, այլ — տեղափոխելով բառերը — քարոզեց ի՛նչ որ ապրեցաւ։ Ան Իր կեանքէն քաղեց Իր յայտնութիւններն ու Իր վարդապետութիւնները։ Աւետարանը պատկերն է Իր կեանքին։ Իր կեանքն է, ապրուած կեանքը, ոչ թէ կեանքի գաղափարականը։ Թող կ՚համոզեն թէ Յիսուս անիրականանալի խոյալ մ՚է — «խոյալը՝ որ կ՚կոչուի Աստուած». ահա օրուան բանաձեւը — ցուրտ հեգնութիւնը կրօնքին դէմ —։ Ո՛չ, ո՛չ, չի կայ խոյալ մը, որ կարենայ հաւասարիլ Անոր կեանքին, Անոր «Ես»ին բարձրութեան։ Գաղափար մը, խոյալ մը չի չինեց այս կեանքը. չէր կրնար։ Մեծ կեանք մը ծնաւ այս մեծ գաղափարականը. միտքն է որ ծնունդ կուտայ խոյալին։ Եթէ երբէք գոյութիւն ունեցաւ միտք մը այնքան հսկայ, միտք մը՝ որ յղացաւ կեանքի այսպիսի վեհագոյն, վերագոյն գաղափար մը, որ դպաւ խոյալներու ամենէն վերջին, անմատչելի կէտին, ուրեմն, այն է Քրիստոս, այն է Աստուած։ Պաշտեցէք զԱնիկա։

Եկէք, ուրեմն, ո՛վ գիտուններ ու տգէտներ, ուսեալներ ու անուսներ, մեծեր ու պզտիկներ։ Ահա Ան է որ կուգայ. ու այս անպաճ անշշունչ, ճառապայթի պէս լուիկ։ Անոր ոտնաքայլին ձայնը չի լսուիր. կ՚քալէ հեզիկ դէպի մեր սրտերը, մեր հոգւոյն սրահները, մեր ներքին կեանքի խորանը։ Իրեն հետ կ՚բերէ լոյս, խա-

ղողութիւն , կեանք , յոյս ու սէր ։ Ո՜հ , բացէք ամրափակ դռները ձեր սրտերուն ։ Թոյլ տուէք Անոր , որ անխնայ քանդէ ձեր կանգնած մարմինի անսուրբ սեղանները , մաքրէ , յարդարէ ձեր սրտի տաճարը , զոր «աւազակներու այր» ըրած էք , ու այն թող կոչուի այլ եւս «Տուն իմ տուն աղօթից» ։

Ծաղիկներ սփռեցէք Անոր ճամբուն վրայ ։ Մշտադալար արմաւենեաց ոստեր թափեցէք , ձեր փառքի ու չուքի հանդերձները տարածեցէք Անոր ոտից տակ ։ Ծաղկազարդեցէք , փառազարդեցէք Անոր գնացքը , որ կուգայ խոնարհութեան կառքով , հեզութեան վրայ նստած ։ Բացէք ամրափակ դռները ձեր սրտերուն , եւ ընդ առաջ ելէք Անոր , աղաղակելով — «Ովսա՜ննա Բարձրելոյն , օրհնեա՜լ որ գայդ յանուն Տեառն» ։



# ՋԱՏԻԿ

---

## ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱ՜Ւ Ի ՄԵՌԵԼՈՑ

*Քրիստոսի Ծննդեան եզական դէպքէն վերջ, այն յաւերժական դէպքէն՝ յորում Աստուած* **ՄԱՐԴԱՑԱՒ** *այցի եկաւ մեր մոլորակին, եւ զոր հռչակեցին հրեշտակաց գունդեր երկնից մէջ յօրինուած ու առաջին անգամ երգուած հոգեհմայ երգով մը — «Փա՜ռք ի բարձունս» — այս յոյժ մեծ դէպքէն վերջ՝ Քրիստոսի հրաշափառ Ս. Յարութեան, յաւիտենական հոգեւոր յաղթանակին յուզումնալից, ցնծալից աւետիսն է, որ նոյնպէս նախ երկինքի լուսաթուխ պատգամաբերներու ձեռօք տրուած է մեզի։ Առաւօտ մը՝ այն լուսաթոյր, լուսափայլ առաւօտներէն, Քրիստոսի թափուր գերեզմանին մէջ նստող լուսապայծառ հրեշտակի մը բերնէն թռաւ այս բառն — «յարեա՜ւ» — ու վերերէն փչող հովի մը քշեց, տարաւ, ցրցնքնեց մինչեւ երկրի հեռաւոր ծայրերը, ծովերն ու ցամաքները։ Եւ այս բառն, հրեշտակին բերնին մէջ հեշտալուր նուագի փոխուած, մօտ երկու հազար տարի կ'ճամբորդէ, կ'ծաւալի, կ'ընդարձակուի անխափան յառաջընթացութեամբ տիեզերական համանուագ երաժշտութեան մը պէս, որ սկսուած օրէն մինչեւ այսօր չի վերջանար ու յաւիտեան կ'շարունակուի։*

*Այս գերահրաշ դէպքին ցնծաւէտ լուրն է զոր կ'հռչակենք, զոր անգամ մը եւս կ'հաղորդենք իրարու —*

«Քրիստոս յարեաւ ի մեռելոց» ։ Ու ես, ներեցէք ըսել, այս բանաձեւն, որ ա՛լ խօսք ըլլալէն դադրած, յանկերգ մը եղած է քրիստոնեայ աշխարհի համերգութեան մէջ ; այս բառերու երբեակ միութիւնն աշխարհիկ ձեւակերպութեամբ յիշող քրիստոնեաներէն չեմ ։ Չեմ ներկայացներ զայն — Քրիստոսի յարութիւնը — իբր Քրիստոնէական կրօնին ֆանթէզին, կամ կրօնային բանաստեղծութեան մէկ յղացումը ։ Ոչ ալ անոնցմէ եմ՝ որ կ՚կարծեն թէ այս «լոյս հաւատք»ը իբր տոհմային աւանդութիւն (!) պահելու է, սոսկ ցեղային կեանքի սիրոյն համար ։ Բայց ես կ՚հոչակեմ զայն բարձրաբարբառ ու այնքան պարծանօք, այնքան հպարտութեամբ որքան ճշմարտութիւնը կրնայ ներշնչել ինծի ։ Ճշմարտութիւնն անկեղծօրէն կ՚ընդունուի ոչ մէկ բանի սիրոյն համար, այլ ամէն նկատումներէ վեր՝ մի միայն ճշմարտութեան սիրոյն համար ։ Նուիրագործեալ ստութիւն մը կրկնելու, տոհմային կամ Քրիստոնէական սովորութեան մը համակերպումի կեղծիքով չէ որ կուգամ ու կ՚ըսեմ — «Քրիստոս յարեաւ» ։ Ո՛չ, կրօնքն իր բոլոր ըմբռնումով սուրբ է, ու չի կրնար իբր ծածկոյթ ծառայել հանրային կեղծ սովորութեանց։ Կեղծիքը կրօնքի մէջ, կրօնքի ձեւին տակ մեղք է, ամօթ է ։ Ո՛վ որ չի հաւատար, լաւ է որ լռէ, լաւ է որ չի ստէ, եթէ մարդ է ։ Ո՛վ որ կ՚հաւատայ, ո՛վ որ կ՚հասկնայ իր ըսածը, թող ջերմագին սեղմէ ձեռքերը ու եռանդով կրկնէ — «Քրիստոս յարեաւ ի մեռելոց, — օրհնեա՜լ է յարութիւն Քրիստոսի» ։

Ու մինչ այս տողերով կուգամ իմ ընթերցողներուս կրկնել նոյնը՝ օրուան պատշաճ խօսք մը ընելու, կամ գրական սին հաճոյքի ժամանց մը ընծայելու մտադրութիւն չունիմ. երբէք ։ Չեմ գրեր այդ մտօք, ու մի՛ կարդաք այդ մտօք ։ Ի՛նչ որ կ՚ուզեմ ներկայացնել ձեզ, ստոյգ, կատարեալ իրողութիւն մ՚է. պատմական ճշգրիտ

դէպք մը՝ որ իր թուականը, իր ժամանակագրութիւնը եւ իր տեղագրութիւնն ունի ։ Համոզուած եմ թէ **ճշմարտութիւն** է այն, ու կ'հաւատամ անոր, ցորչափ բարոյական աշխարհ մը կայ, ու անոր մէջ՝ ճշմարտութեան սկզբունք ։ Յաւիտենապէս ճշմարտութիւն է ըսել «Քրիստոս յարեա՛ւ», եթէ ճշմարտութիւնը նշանակութիւն մ'ունի, եթէ ճշմարտութիւնը գոյութիւն ունի ։

Չի կայ պատմութեան մէջ ընդունուած իրողութիւն մը, կատարուած դէպք մը, որոյ ստուգութիւնը հաստատուած ըլլայ այնքան հզօր ապացոյցներով քան Քրիստոսի յարութիւնն ի մեռելոց ։ Ոեւէ ակներեւ, անժխտելի դէպքէ աւելի ամուր, անխախտ հիմի վրայ կ'կենայ այն ։ Եթէ կայ իրական աշխարհ մը ու անոր մէջ դիպուածոց շարք մը, իրերու ընթացք մը, ուրեմն, կարելի չէ տարակոյս յայտնել իրողութեան մը նկատմամբ, զոր ժամանակակից պատմութիւնը, ժամանակակից աւանդութիւնը ու ժամանակակից կեանքը կ'արձանագրեն ։ «Քրիստոս յարեա՛ւ»ն աստուածաբանական վարդապետութիւն մը չէ, ոչ ալ հաւատալիք մը իբր երկնային յայտնութիւն ։ Մինչեւ իսկ սոսկ Աւետարանական յայտնութիւն մը չէ այն, այլ **բացարձակ իրողութիւն** մը, որուն մէջ քերականութիւն կայ դէպքին անցեալ ժամանակը ճշդելու — «յարեա՛ւ» —, ու պատմութիւնը կայ նոյն անցքը հաւաստիմաբար դրոշմող ։

Պատմուած դէպք մը, սակայն, ստուգելու համար տրամաբանական փաստերէ, ապացոյցներէ աւելի ականատես, իրազեկ վկաներ կ'պահանջուին ։ Ու աշխարհի մէջ ո՞ր դատաստան, ո՞ր վճիռ եւ ո՞ր պատմական դէպք, ո՞ր ընդունուած, ստուգուած իրողութիւն հաստատուած է այնքան բազմաթիւ, միաբան, ամէն վստահութիւն ներշնչող վկաներէ՝ որքան Քրիստոսի յարութիւնը ։ Անոր յարութեան վկաներն անոնք էին, որ ամենէն աւելի

աղօտ գաղափարն ունէին յարութեան վարդապետութեան վրայ, որոնք ոչինչ կ'հասկնային Քրիստոսի յեղյեղած խօսքերէն — «Որդին Մարդոյ կ'երթայ մատնուելու . . . յետ երից աւուրց յառնելու», եւ որոնք, Անոր մահէն վերջ յուսահատ եւ յուսախաբ զգացած, դեռ չէին կրնար իսկ յիշել Քրիստոսի նոյն նիւթին վրայ նախօրօք ըսածները եւ չէին սպասեր անոնց իրագործումին։ Անոր մահով իրենց բոլոր յոյսերն ի դերեւ ելած կ'կարծէին։ Քրիստոսի մահը վերջնական եւ անդարմանելի էր իրենց համար։ «Իսկ մենք կ'յուսայինք թէ Անիկա էր որ Իսրայէլը պիտի ազատէր», կ'ըսէին խառնուած մարդու յուսահատ զգացումով։ Նոյն վկաներն՝ որքան արժանահաւատ նոյնքան սկեպտիկ, եւ, հետեւաբար, դիւրահաւան ու դիւրախաբ ըլլալէ շատ հեռի էին։ Ո՛չ իրենց Վարդապետին ըսածներուն հաւատացեր էին, եւ ո՛չ ալ իրարու կ'վստահէին։ Իւրաքանչիւրը կ'ուզէր անձամբ անձին ստուգել, իր իսկ աչքով տեսնել ու ձեռօք շօշափել։ Ու զԱնիկա տեսնելէ վերջ իսկ կ'տարակուսէին — «ոմանք յերկուացան»։ Մանաւանդ թէ այնպիսի վկաներ էին անոնք, որ ոչ միայն շահ չունէին սուտ մը քշելու մէջ, այլ վրայ կուտային իրենց շահերը, հանգիստը, ամէն ինչ, եւ ամենուն վրայ՝ իրենց անձերը։ Կ'հարցնեմ, հաւատ ընծայա՞ծ էք երբէք բանի մը, որ աւելի ստոյգ, աւելի հաւատարիմ աղբիւրէ բղխած ըլլայ։

Հոս տեղը չէ, սակայն, երկարելու համար դիմումներու անվերջ շարքը։ Այսքան միայն՝ ըսելու համար թէ Քրիստոսի մեծափառ յարութիւնը սոսկ վարդապետութիւն մը կամ դաւանանք մը չէ, այլ մանաւանդ կատարեալ իրողութիւն մը, զոր կրնանք ու պարտինք ընդունիլ համոզումով՝ ճիշդ ինչպէս ընդունած ենք զանազան անցուդարձեր, զորոնք վաւերական պատմութիւնը մեզ աւանդած է։

Քրիստոնէական տաճարին դարուն մէջ, երբ՝ այս դէպքին յիշատակն այնքան թարմ էր մտքերու վրայ, երբ ամէն ժամանակէ աւելի խիստ քննադատութեան ենթարկուած տեսնել կ'ակնկալուէր՝ եթէ տարակուսելի հանգամանք մ'ունէր այն. Քրիստոնէութեան այս առաջին փթթումին ատեն, երբ անարմատ, մատաղ տունկ մը թեթեւ հովէ մը կրնար խլուիլ, զարմանալի չէ՞ որ անոր ստուգութիւնը բնաւ խնդրոյ ներքեւ չէր իյնար։ Քրիստոսի յարութեան չի հաւատալ՝ արեւին պայծառութեան չի հաւատալու պէս անհեթեթութիւն մը կ'նկատուէր։ Եւ Պօղոս, հեթանոսաց մեծ առաքեալը, յարութեան վարդապետութեան մասին ոմանց յայտնած մոլար կարծիքները ցրելու համար, ոչ մէկ ապացոյցի դիմում չըներ, այլ մի միայն կ'հիմնուի Քրիստոսի յարութեան վրայ, իբր անհերքելի, անստելի, ճշմարիտ իրողութեան մը վրայ։ «Քրիստոս յարեա՛ւ, ուստի եւ մեռեալք յառնելոց են». ահա Պօղոսի ապացուցութիւնը։ Նուազ ուշագրաւ չէ դիտել որ նոյն իսկ մեռելոց յարութեան մասին կասկած յայտնողները չէին կրնար ուրանալ Քրիստոսի յարութիւնը, եթէ ոչ Պօղոս զայն յառաջ պիտի չի բերէր իբր խիստ համոզիչ, ակներեւ, հզօր ապացոյց իր քարոզած վարդապետութեան ի նպաստ։

Այլ, սակայն, ի՞նչ պէտք են մեզ այս վկայութիւններ։ Միթէ այնքան անհաւատալի՞ կ'գտնենք յարութիւնն Անոր, որ ըսաւ, «Ես եմ յարութիւն եւ կեանք»։ Աւելի չփոթիչ եւ առաւել տարակուսելի պիտի չըլլա՞ր եթէ Նա չէր յարուցեալ։ Չէ՞ք կարծեր թէ աւելի դժուար է չընդունիլ յանձին Յիսուսի կատարուած այն իրողութիւնը՝ քան ընդունիլ։ Ի՞նչպէս կրնար մեղաց թողութիւն տալ, սատանային գործքերը քակել, Փրկիչն ըլլալ մեղանչական հոգիին, ու նոյն ատեն բռնուիլ, յաղթուիլ մահէն։ Ո՛հ, կարելի՞ է ենթադրել մահը

կեանքի մը, որ ուրիշ ամէն կեանքէ վեր, Աստուծոյ մը կեանքն էր ։ «Քրիստոս» եւ «ոչ յարուցեալ» անկարելի, անհաւատալի հակասութիւն մ'է ։ Կեանքին ամենէն անբացատրելի, անմեկնելի առեղծուածն է ։ Կարելի է ուրանալ Քրիստոսի յարութիւնը՝ եթէ կարելի է ուրանալ կեանքը, ո՛հ, կեանքը Անոր ։ Աշխարհ ինչո՞ւ չի հետաքրքրուիր այն կեանքով, որ այնքան պայծառօրէն ցոյց կուտայ թէ մահը չի կրնար մուտ գտնել Անոր մէջ, թէ իրաւամբ ԿԵԱՆՔՆ էր ու յարութիւնը ։ Կ'ըսեն թէ գաղափարականն անմատչելի, անհասանելի է ։ Այլ ահա կեանք մը, որ գաղափարական էր ու վեր ամէն գաղափարականէ ։ Ահա խօսք մը, որ անձնաւորուած էր, որ կ'պտտէր մարդոց մէջ, որ կ'ըսէր, «Լոյս եմ», ու կ'ծագէր. որ կ'ըսէր, «Հոգի եմ, կեանք եմ», եւ կեանք կ'դնէր մարդուն մէջ ։ Ո՛հ, համոզե՞լ պէտք է միթէ՝ թէ այս մեծ կեանքն ինչպէս որ մարդկային սահմանաւորումներ ընդունեց կամաւ, նոյնպէս մահ ճաշակեց՝ այլ «յետ երից աւուրց յարեա՛ւ» ։

Քրիստոնէական կրօնքին յօրինուածքն այնքան հոյակապ, այնքան հսկայ, այնքան ընդարձակ ու պատկառելի է, եւ այնքան մեծ ու մեծաշուք՝ որ կարելի չէ տարակուսիլ անոր Հիմին ամրութեան, խորունկութեան ու տեւականութեան վրայ ։ Երբ անգամ մը առիթ ունեցայ դիտել Անգլիոյ, Էտինպուրկի եւ Հիւսիսային Սկովտիոյ ճամբան կարճեցնող երկաթեայ վիթխարի կամուրջը, որ մէկ ու կէս մղոն պարապութեան մը մէջ երկնցած է Ֆորթհի Ծոցին ծաւալուն, ծփուն ու խիստ խոր ջուրերուն վրայ — կամուրջ՝ որ դարուս ճարտարագիտական եւ մեքենագիտական հանճարին ամենէն փայլուն, մեծափառ յաղթանակն է իրաւամբ — ծովուն մակերեսէն 350 ոտք խելայեղ բարձրութենէ մը վար աչքերս կ'փնտռէին հիմը ։ Հիմը տեսնել կ'ուզէի. հիմը՝ ա-

րուն վրայ երկաթներու ահագին կոյտեր, երկաթներու բլուրներ, ամբար, անհուն ծանրութիւններ կ՚հանգչէին, եւ անոնց հետ ուրիշ ծանրութիւն մը — երկաթեայ հրաշունչ վիշապ մը — երկարաձիգ կառախումբը, որ ցնցելով, ցնցուելով, շարժ ու թնդիւն հանելով կ՚սուրար, կ՚անցնէր ու կ՚դառնար անոր վրայէն. մինչ վարը, խաժ ալիքներ երբեմն մեղմիկ, երբեմն կատաղի կուգային ու կ՚զարնէին անոր: Հիմը, այո՛, հիմը, միթէ կարելի՞ էր խորհիլ վայրկեան մը թէ այն կրնար խարխուլ կամ անհաստատ ըլլալ: Եւ, սակայն, այն յաղթ կամուրջը, որ մահուան անդնդախոր մութ գետին երկու եզերաց վրայ ձգուած է կցելու համար այս կեանքը հանդերձեալին, ի՛նչ հոյակապ, յաւերժական գործքերով ծանրաբեռնեալ է, եւ անոնց հետ ի՛նչ մարդկային յոյսերու, ճակատագիրներու, կեանքերու յաւիտենական ծանրութիւններ կ՚կրէ իր վրայ: Անոր վրայէն անցնող բոցաշունչ ոգին քանի՜ դարերու քաղաքակրթութիւնը, գեղարուեստները եւ ազգերու պատմութիւնները իր ետեւէն կ՚քաշէ, կ՚տանի: Ո՜հ, ի՛նչպէս տարակուսիլ քան դարերու փորձութեանց, հալածանաց վայրագ կոհակներու խորերուն մէջ թաղուած, մնացած այս Հիմին վրայ, զոր ժամանակն իր աւերիչ ընթացքով չի հինցըներ, չի մաշեցներ, այլ, մանաւանդ, կ՚նորոգէ, կ՚ամրացնէ, կ՚յղկէ ու կ՚փայլեցնէ:

Ուրիշ աշխարհ մ՚ալ կայ մեզի ծանօթ, մեզի հետ ու մեր մէջ, որուն բոլոր տարրերը, բոլոր խաւերն ու բոլոր մասերը սահմանուած են հաւատալու այն ճշմարտութեան, որուն Քրիստոս Ինք վկայեց: Մարդկային կեանքի աշխարհն է այն, հոգւոյն տիեզերքը:

Շօշափեցէք մարդուն բոլոր իղձերն ու ձգտումները: Անոնք ամէնն ալ ի խնդիր են ընդգրկելու, ողջունելու զԱնիկա, որ ըսաւ, «Ես եմ յարութիւն եւ կեանք»:

«Քրիստոս յարեա՛ւ»ն ամենէն վսեմ, հմայիչ մեղեդին է, ամենէն հաճելի, հեշտալուր մեղեդիքը մեր հոգիներուն։ Այն աւետիսը մեզի այնքան ընդունելի, մեր սրտին այնքան ընտանի, մօտիկ կուգայ, որ բոլոր էութեամբ կ'ուզենք հակառակիլ պանիկա լսեցնող ամէն ձայնի։ «Ես»ն է որ կ'իյնի, կ'բողոքէ յաւիտենական մահու եւ ոչնչացումի դաժան գաղափարին դէմ։ Միայն Մարիամ ու իր ընկերուհիները չէին որ արցունքն աչքերուն գերեզման կ'վազէին։ Մեր հոգիներ յարուցեալ Քրիստոսը կ'փնտռեն անդադրում։ Ծարաւի ենք կեանքի։ Մեր արտօսրն ու հառաչանքը դառն դանդատներ են մահուան դէմ։ Կոշտ հողի կուտակումները, չիրիմներն ու կոթողները եւ անոնց վրայ թափուած ծաղիկները կեանքը մշտնջենաւորելու անզօրայ ճիգեր եւ մահուան տիրապետութեան դէմ ապստամբ կռուի ու յաղթանակի տկար նշաններ են։ Մեր անձը չի կրնար հաշտուիլ մահուան հետ։ Ստեղծուած չենք մենք խլուրդներու, ճճիներու բնութեամբ, որ կոյր համակերպումով կարող ըլլանք գետնի ծակերուն մէջ սողալ, գեռալ՝ ապականութեանց մէջ թաթախուն։ Ոչ ալ բուերու հոգի դրուած է մեր մէջ որ փախչինք արեւուն լոյսէն։ Արծիւի թեւերով աշխարհ եկանք ամէնքս, մարդկային ազգի ներկայացուցիչներս, ու ճախրել, սաւառնիլ կ'ուզենք վերի անսահմանութեանց մէջ։ Թեւաւոր հրեշտակներ ենք ու շատ նեղ կ'գտնենք մեր մարմինի պատեանը ու աշխարհն համայն, որ իր բոլոր փառքովը ու խոստումներովը մարդկութիւնը դժգոհ ու ապերջանիկ ընելու ծառայած է միայն։ Ո՛հ, արեւ կ'ուզենք մենք, արե՜ւ։ Անոր համար՝ գոյութիւն ունեցանք։ Երբ այն կ'քաշուի մեզմէ, կ'խաւարինք, կ'մթննանք, կուլանք։ Լոյս կ'ուզենք, ու լոյս մը որ վերջալոյսի չի փոխուիր, որուն չի յաջորդեր գիշերը։ Եւ այսքան անհուն իղձերով, բարձր սլա-

ցումներով, զարմանալի, անման ընդունակութիւններով ամեղծուած հոգիին առջեւ գերեղման մը փորել՝ առանց յարութեան յոյսի, առանց անմահութեան լոյսի, եթէ իրաւ է, Աստուծոյ ծաղրանքն է այն հէք մարդուն երեսին, եթէ ոչ — ու բիւր անգամ ոչ — մարդուն անգութ հեգնութիւնն է մարդկութեան դէմ։

Եթէ տակաւին չենք հաւատար յարուցեալ Յիսուսի, ուրեմն բաղդատենք Սուքարի ջրհորին վերեւ նստող անօթի, ծարաւ Յիսուսը, որ մոռցած էր կերակուրը, Իր կենսական սնունդը՝ ուրիշ իրական անօթի մը, ծարաւի հոգի մը յագեցնելու համար, որ երեսէ ինկած, մեղաւոր, պիղծ, թշուառ կին մը փրկելու համար սիրտ կ'հատցնէ, խօսք կ'հասկցնէ։ Ան Յիսուսը որ անհաւատարմութեամբ բռնուած, ինկած կնոջ մը, աշխարհէն նախատուած, դատապարտուած կնոջ մը ըսաւ, «Ես քեզ չեմ դատապարտեր, գնա ու այսուհետեւ մի՛ մեղանչեր», ո՜հ, այս օրհնեալ, այս բարի, ներող Յիսուսը բաղդատենք ա՛ն Յիսուսին հետ, որ յարութիւն առաւ, եւ որ վերջին անգամ ըլլալով ըսաւ Իր աշակերտաց, «Ամէն իշխանութիւն ինծի տրուեցաւ երկինքի ու երկրի մէջ . . .»։ Ո՛վ Յիսուս, ուրեմն, այս զօրութեամբ, այս իշխանութեամբ երթանք, բզքտե՞նք Պիղատոսը, երթանք, խաչե՞նք դպիրները, վրէժխնդիր լուծե՞նք բոլոր քահանայապետներէն։ Ուրեմն այդ անյաղթելի, նոր զօրութեամբդ կ'ղրկե՞ս որ երթանք քարուքանդ ընենք Երուսաղէմը, ապաշնորհ քաղաքը։ — Ո՛չ, «Ուրեմն գացէք, քարոզեցէք . . . Երուսաղեմէն սկսած», եւայլն։ Նոյն Յիսուսը չէ՞, նոյն Աստուած Յիսուսը. ըսէ՛ք։ Պէտք չէ՞ կրկնել Ղուկասու հետ — «Աս նոյն Յիսուսը»։

Քարոզեցէք, ուրեմն, տարէք այս մեծ աւետիսը — յարութեան աւետիսը։ Ըսէք վշտաբեկ սգաւորներուն որ սրբեն արցունքնին, զի «Քրիստոս յարեա՛ւ ի մեռե-

լոց» , եւ Քրիստոս մեր Անդրանիկն է , «ննջեցելոց երախայրին» ։ Քրիստոս մեր ներկայացուցիչն է իբր կատարեալ մարդ , Քրիստոս մարդն է ։ Երբ Նա կ'խաչուէր , մարդն էր որ կ'խաչուէր Անոր մէջ ։ Երբ Նա կ'մեռնէր , մեղապարտ մարդն էր որ կ'մեռնէր յանձին Նորա ։ Ու երբ Նա յարեաւ , մարդն է , մենք , որ կ'յառնենք Անով եւ Անոր մէջ ։ Մի' տարակուսիք , մեր ապագայ յաւիտենական կեանքը կ'պահուի ամենէն ապահով , ամենէն հզօր ձեռաց մէջ , Քրիստոսի կեանքին մէջ , Անոր սրտին մէջ ։ Մեռնող սիրելեաց վերակենդանութիւնն այնքան ճշմարիտ է , որքան Ինքն, Քրիստոս ։ Եւ ո՞վ կայ , ի՞նչ կայ ճշմարիտ քան Քրիստոս ։ Ու եթէ Քրիստոս չէ ճշմարիտ, ճշմարտութիւնը, նոյն իսկ ճշմարտութիւնը սուտ է։

Օր մը կուգայ որ կ'մարի աշխարհային վաղանցիկ ճրագը , հեշտանքի , պերճանքի ճրագը , ու կեանքի ճրագը , ո՛րքան ալ պայծառ փայլի ։ Յարութեան յոյսն է միայն , անվախճան կեանքի լոյսը , որ կ'մնայ մարդուն հետ , կ'մնայ անշէջ ։ Օ՜հ , այս լոյսը վառեցէք՝ ճրագը մարած տան մէջ ։ Այս լոյսը վառեցէք՝ մահուան ստուերներու հովտէն անցնող ոգեւարին գլխուն վերեւ ։ Այս լոյսը վառեցէք՝ յուսաբեկ, խորտակուած , ջախջախուած կեանքին մէջ ։ Այս լոյսը վառեցէք՝ սգապատ , սեւապատ սրտին մէջ ։ Այս լոյսը վառեցէք , վերջապէս, մռայլ, ցուրտ չիրմին շուրջ ։ Այս լուսով յանձնեցէք հողին ձեր սիրակարօտ , սրտահատոր աչքի լոյսերը, սպասելով տեսնել նորէն Գետին միւս եզերքը , ոսկեփայլ ափունքին վրայ ։

Անգամ մը եւս հաղորդեցէք իրարու այն ցնծալից լուրը , անգամ մը եւս հռչակեցէք զայն — «Քրիստոս յարեա՛ւ ի մեռելոց» ։ Տուէք այս աւետիսը աղքատին ու հարուստին , տնանկին ու մեծատան , արդարին ու մեղաւորին , մեծին ու պզտիկին ։ Ու Ս. Եկեղեցին անգամ

մը եւս թող հնչեցնէ իր ամենէն հոգեշունչ, ամենէն հոգենուագ, քաղցրալուր երգերէն մին. —

Սիօնի որդիք զարթի՛ք,
Հարսին լուսոյ տո՛ւք աւետիք.
Եթէ Փեսան քո յարուցեալ
Յաղթեալ մահու իշխանութեամբ
Գայ պսակել զքեզ փառօք,
Ե՛լ ընդ առաջ պճնեալ զարդուք,
Երգեա՛ երգ նոր Յարուցելոյն,
Ննջեցելոց կենաց պտղոյն։



# ՊԵՆՏԷԿՈՍՏԷ

## ԿԱՄ

# ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏ

---

Ինչո՞ւ այս աստիճան կ'շահագրգռուինք շարքով մը դէպքերու, որոնք ամէնն ալ մէկ կեանքի շուրջը տեղի կ'ունենան, մէկ Անձի վրայ կուգան, կ'կատարուին: Ինչ փոյթ թէ Յիսուս անուն մէկն ատենօք ծնած է, ապաննուած է, յետոյ յարութիւն առած է, յետոյ համբարձած է, եւ, հուսկ յետոյ, նոյն դէպքերն հաստատող, տարածող դէպք մը եւս պատահած է Պենտէկոստէ յորջորջուած Հրէական տօնի մը օրը: Պատմութիւնն Հրեայ Մարդու մը եւ Անոր կատարած գործերն ի՞նչ յարաբերութիւն ունին իմ կեանքիս հետ, եւ ի՞նչ ազդեցութիւն՝ իմ ճակատագրիս վրայ: Ինչո՞ւ յիշատակել, տօնել, հռչակել այդ օրերը:

Այսպէս կ'հարցնէ օրուան խորհող ու, թերեւս, անկեղծ միտքը: Ինչո՞ւ.—

Կ'պատասխանեմ, նախ՝ սա պարզ պատճառաւ որ այդ յայտնուած Կեանքը նորօրինակ, անօրինակ կեանք մ'էր, միակ կեանքն աշխարհի անցեալին ու բոլոր ժամանակին մէջ: Կեանք մը՝ որուն նմանն ուրիշ մը ո՛չ տեսնուած է եւ ո՛չ հնար է որ տեսնուի: Ո՞վ լսեր է, ո՞վ տեսեր է, ո՞ր բարձրասլաց միտք յղացած, ստեղծած է

*երբէք այսպիսի կեանք, որ պարզ, առանց ձկնորսներու բերնով պատմուած, նկարագրուած է ամենապարզ եւ անպաճոյճ ոճով։ Անենօք կոյր մարդ մը, Հոմերոս անուն, դիւցազն մը երգեց ու պտտեցաւ, յետոյ աստուածը դարձաւ բոլոր Յունաստանի։ Որ աշխարհէ եկան, սակայն, այս ռամիկ մարդիկը։ Երկինքի բանաստեղծնե՞րն էին, Աստուծոյ հրեշտակնե՞րը։ Ուրկէ առին գաղափարը իրենց Դիւցազնին, որուն նմանն Ապողոնի առասպելական քնարին վրայ ալ չերգուեցաւ։*

*Նայեցէք չուրջերնիդ, տեսէք, կրնա՞ք գտնել աոր նման մէկ հատիկ դէմք մը բոլոր բարոյագէտներու մէջ, Արիստոտէլի, Սոկրատի, Պղատոնի ու բոլոր պատկառելի դպրոցներուն մէջ։ Ասանկ արեւ մը ծագա՞ծ է երկինքին երեսը։ Ասանկ սպիտակ գոյն մը տեսնուա՞ծ է Ալպեանի գագաթներուն վրայ։ Տեսնուա՞ծ է ասանկ համակ լոյս, համակ ճշմարտութիւն, համակ սրբութիւն, համակ բարութիւն, համակ արդարութիւն եւ համակ սէր կեանք մը։ Ձեմ ըսեր անոնց համար որ աչք չունին, ոչ ալ ականջ, զի կոյրերը չեն տեսներ գեղեցիկը, ու խուլերը չեն լսեր երաժշտութիւնը։*

*Վասն զի, կ'պատասխանեմ, այդ կեանքը, այդ զարմանալի, տարօրինակ կեանքը Աստուծոյ կեանքն է մարդու կեանքին մէջ, աստուածայինը մարդկայնացած։ Վասն զի այն՝ մարդու կեանքն է, ու Աստուծոյ կեանքը միանգամայն։ Որ, կեանք մը իսկատիպ, ինքնատիպ, ինքնաբոյս, անկախ զինք շրջապատող իրերէն, անկախ բոլոր ազդեցութիւններէն, անկախ ժամանակէն. աշխարհի մէջ՝ ու ոչ աշխարհէն, երկրի վրայ՝ ու երկրէն դուրս, մարդ՝ ու ոչ մարդ, այնքան մարդ՝ որ պէտք է ըսել Իրեն համար «Որդի Աստուծոյ», ու այնքան Աստուած՝ որ հարկ է կրկնել, յեղյեղել, կոչել զինք «Որդի Մարդոյ»։ Ուստի Ան՝ Հրեայ մարդը չէ, ոչ ալ Հրեայի*

զաւակ, այլ՝ «Որդին Մարդոյ», մեր եղբայրը. ա՛ն, մեր մարմնէն մարմին: Ան հասարակաց Մարդն է, մարդոց Մարդը: Նա է ՄԱՐԴը:

Կ՚պատասխանեմ, նախ, թէ, վասն զի այս էակը, որուն կենաց զանազան պարագաները կ՚հաչակենք, Ինք է, մինակ Ինք՝ մարդուն գերագոյն պէտքը: Ինք, Իր կեանքն է մեր հոգեկան կարօտութեանց լիացնողն ու լրացնողը: Ինքն է միայն, որ գոհացում կ՚ընծայէ մեր բոլոր բարձրագոյն իղձերուն, յագեցում կուտայ մեր հոգիներու մշտնջենական անօթութեան, կ՚անցնէ պապակը մեր ամբաւ սրտէն, որ ամկիանոսը կ՚խմէ ու կ՚գոչէ, «Ծարաւի՛ եմ»: Անոր անձը կայ միայն պատասխան ու լուծում մեր անվերջ հարցերուն, մեր տարակոյսներուն, մեր հոգեկան խարխափումներուն ու յուսահատ կնճռոտութեանց: Այո, հեղ մ՚ալ կ՚շեշտեմ այս կէտը. ո՛վ որ զԱստուած գտնել, զԱնիկա ճանչնալ կ՚ուզէ, թող երթայ Որդիին: Ան յայտնութիւնն է Աստուծոյ: Մի՛ ըսեր, «Պէտք է փնտռել ու յետոյ երթալ Անոր»: Ո՛չ, ո՛չ, քու գրադարանիդ բոլոր գիրքերդ չեն կրնար յայտնել զԱնիկա: Ինք միայն կ՚բացայայտէ զԻնք եւ կ՚ծանօթացնէ Հայրը: Ի՞նչպէս գիտնամ ճշմարտութիւնը, ի՞նչպէս գիտնամ զԱստուած, զՔրիստոս: — Գնա՛ Անոր:

Հէ՜, կ՚կարծէ՞ք թէ խորհրդապաշտութեան սահմանները կ՚թեւածենք նորէն. բայց, ո՛չ: Ս. Գրոց մէջ կայ միստիք, բայց ի՛նչ որ կ՚զրուցենք Քրիստոսի կեանքին ու Անոր կցորդուած արդիւնքներուն ու ազդեցութեանց մասին՝ միստիքականութիւն չէ. բնա՛ւ: Աւետարանի վարդապետութիւնները, գիտցէք որ, չեն նմանիր Տարոււքի փարկածներուն ու փիլիսոփաներու բնազանցական հայեացքներուն: Սխալ է, Քրիստոնէութիւնը հիմնուած չէ տեսութեանց վրայ: Մենք, քրիստոնեաներս, իրողութեան խօսքը կ՚ընենք, ու միայն իրողութեան: Եթէ

Քրիստոս ներկայ ըլլա՛ր այժմ մարմինով, ինչպէս ատե-նօք եղաւ, պիտի ըսէինք կոյրերուն, կաղերուն եւ բո-լո՛ր հիւանդներուն որ Անոր դիմեն ։ Ու, թէ որ դիմէին, կ'ըսենք մենք, անշուշտ պիտի բժշկուէին ։ Եւ աշխար-հի համարձակ կ'ըսենք թէ Նա այսօր ներկայ է հոգիով, ու եթէ կոյրերն երթան Անոր, պիտի տեսնեն. պիտի տեսնեն հոգեւոր աշխարհը, հոգեւոր, անտեսանելի ի-րերը ։ Կաղերը կարող պիտի ըլլան քալել «նեղ ճամբուն» մէջ, որ դէպի կեանք կ'տանի. բորոտներն ու պիղծ կեանքերը պիտի սրբուին, մաքրուին. իրենք զիրենք չարչարող այսահարները պիտի զգաստանան, պիտի ա-զատուին դեւին կաշկանդումներէն, եւ բոլոր մահամերձ հիւանդները պիտի ապրին, յաւիտեան պիտի ապրին ։

Հոս ո՛չ ենթադրութիւն կայ, ո՛չ տեսութիւն ։ Ի-րողութիւնն է որ այնքան պարզ ու այնքան բարձրա-ձայն կ'խօսի ։ Եւ ի՞նչպէս ուշադրութիւն չընծայել, չի դառնալ ու չի նայիլ Անձնաւորութեան մը, որ կ'ըսէ ի լուր աշխարհի, «Ինծի եկէք» ։ Ո՞վ ըսած է այսպէս, ո՞վ կրնայ ըսել, եւ ի՞նչ առեն ։ Ո՞ր բան երբէք կարող ե-ղած է տալ հանգիստ յոգնածին ։ Օ՜հ, այդ ինքնավստահ «Ինծի եկէք»ին մէջ Աստուծոյ բովանդակ ամենակարո-ղութիւնը կայ ։ Գնա Անոր, ուրեմն, եւ պիտի գտնես լոյս ու յաւիտենական կեանք ։ Զի պիտի ընդունիս զայն — յաւիտենական կեանքը՝ մահէն վերջ — բայց այս օր-ուընէ **պիտի ըլլաս** անմահ կեանք ։

Կ'պատասխանեմ, վերջապէս, թէ վասն զի այն Անձ, որուն կեանքին զանազան պարագաները կ'յիշատակենք, մեզի հետ ունի ամենասերտ յարաբերութիւնը, ինչպէս միսն եղունգին հետ ունի. «Աւելի մօտիկ քան մեր շունչը», ինչպէս Թէնիսըն կ'ըսէ ։ Ուրոյն էակ մը չէ Նա ։ Այնպիսի լծորդութիւն մը, կցորդութիւն մը հաս-տատուած է Իր եւ մեր միջեւ, որ, մասնաւոր իմաստով

մը, ներելի է ըսել թէ մեզ Իրեն պէս ըրած է, ու զԻնք՝ մեզի պէս։ Կցած է Իր ճակատագիրը մեր ճակատագրին հետ։ Իրաւամբ կոչուած ենք «խօսեցեալ կոյսեր Քրիստոսի». վասն զի մասնակից եղած է ոչ միայն մեր տկարութեանց եւ մեր սահմանաւորութիւններուն, այլ եւ նոյն իսկ այն բարոյական ցաւին ու պատիժին, որ մեր մեղանչական, հիւանդացած բնութեան մէջ բունաւորուած էին։ Հաւատքի ձեռք մը կ՚պատուաստէ զԻնք մեր վայրի կեանքին մէջ։ Ու Իր արդարութեան, սրբութեան պտուղները չէ թէ կ՚համարուին մերը, այլ կ՚ըլլան մերը։ Իր կեանքը կ՚ըլլայ մեր կեանքը։ Ինք կ՚շնչէ մեր մէջ, Ինք կ՚խորհի մեր մտքին մէջ, Ինք Իր կամքը կ՚կամենայ մեր կամքին մէջ։

Մենք, մեղապարտներս, Իրմով կ՚ըլլանք անմեղներ։ Ո՛հ, որպէս թէ երբէք մեղանչած չէինք. անմեղնե՛ր։ Մենք, օտարներս, Իրմով կ՚ըլլանք «որդի»ներ։ Ինչ որ Ինք ըրած է, յանուն մեր ըրած է։ Ինչ որ Ինք եղած է, մենք եղած ենք։ Ինք մեր տեղը, մեզի համար եւ մեր մէջ կատարած է ամէն բան։ Լորտ Ռոպէրդս, օրուան մարդը, ուրոյն, անհատ անձ մ՚է, այլ անոր կատարած յաղթութեանց, անոր փառքին ու յառաջ բերած բոլոր բարիքներուն մասնակից չեն Անգլիացիք այնքան՝ որչափ մենք մասնակից ենք Քրիստոսի տարած բարոյական յաղթութեանց։ Անոր մահը մերն է, որպէս թէ մենք մեռած ենք Իրմով։ Անոր փառաւոր յարութիւնը մերն է, եւ որով այնքան ապահովեալ՝ մեր յարութիւնը։ Անոր կեանքին բոլոր պարագաները սերտ յարաբերութիւն ունին մեր անձերուն հետ։ Անոր բարութիւնը մերն է, սրբութիւնը՝ մերը, յաղթութիւնը մեղաց վրայ՝ մերն է, կեանքը մերն է, երկինքը՝ մերն։ Ինչ որ Իրենն է՝ ան մերն է, ու Ինք մերն է։ Իմ ծննդեանս տարեդարձը չեմ կրնար տօնել այնքան խրա-

ւամբ՝ որչափ Անորը ։ Անոր ծննդեամբ իմ վերածնութեանս, որդի ըլլալուս թուականը կ'սկսի ։

Քրիստոս մեր Փրկիչն է, մանաւանդ, բառին ամենէն խորունկ նշանակութեամբ ։ Եւ այս անհուն, անսահման բառին մէջ մարդկային բոլոր բարոյական կարօտութեանց լրումն ու կատարումը կ'բովանդակուի, բոլոր հոգեկան թշուառութեանց դարմանումը կ'պարփակուի ։

Ու, նաեւ, վերջապէս, Ան մեր Քաւութիւնն է ։ Քաւութիւնն՝ որուն միջոցաւ մեր ձեռքերն Աստուծոյ ձեռքին մէջ կ'դրուին, որով մարդն Աստուծոյ հետ կ'միանայ ։ Մարդուն կեանքն ու Աստուծոյ կեանքն իրարու հետ կ'ներդաշնակուին ։ Մարդուն կամքն Աստուծոյ կամքին հետ կ'համաձայնի, կ'հաշտուի ։ Ու, մէկ խօսքով, բոլոր մարդիկ մէկ Հօր շուրջ կ'համախմբուին եւ զիրար կ'համբուրեն ։

Ի՞նչպէս չի հետաքրքրուիլ, ուրեմն, աստնկ կեանքով մը ։ Ի՞նչպէս չի հռչակել ամէն ինչ դէպք որ վերաբերութիւն ունի այս կեանքին, որ բովանդակ մարդկութիւնը կ'անձնաւորէ, որ կրնայ կոչուիլ «Մարդու կեանք»ը ։

Ո՜հ, ներեցէք, կ'աղաչեմ, քիչ մ'ալ երկարել այս տարօրինակ յառաջաբանը, որ քաղաքէն մեծ դուռ մը եղաւ, որմէ դուրս ելլել պէտք ինծի համար դիւրին կ'ըլլայ ։ Կ'ուզեմ, սակայն, իբր նախաբան(՞) դիտել տալ թէ բանաւոր չէ անհաւանական, անհաւատալի համարիլ ամէն դէպք, որ կ'կեդրոնանայ այս մեծ կեանքին վրայ, սա միակ պատճառով որ անոնք ամէնքն ալ արտակարգ, գերբնական հանգամանք ունին ։ Բայց, ըսէք, կ'խնդրեմ, կարելի՞ էր որ սովորական ու հասարակ ճամբով գար Անիկա, որուն ծննդեան օրը թուական կ'առնէ աշխարհի այս օրուան հսկայ քաղաքակրթութիւնը, եւ Անոր նկարագրին շուրջ, ու միայն Անկէ, բոլոր տիեզերքին լոյսը կ'փալփլայ ։ Կարելի՞ էր որ բնական, ծա-

Նօթ օրէնքով մը մօրը ծոցէն օրորոց դրուէր այդ եր-
կինքի Տղան, այդ մեծ Մանուկը, որուն գլխուն վերեւ
պլպլացող կանթեղը, միակ լոյսը, ինչպէս հին վարպետ
մը նկարած է, կ'բղխի նոյն իսկ Ննջող Մանկիկէն։ Ո՛հ,
այդ չուարեցուցիչ, չփոթեցուցիչ Էակը՝ որու առջեւ
ամէն դէմք կ'շառագունի, ամէն մեծ՝ պզտիկ կ'ըլլայ,
ամէն լոյս ստուերի կ'փոխուի, եւ որուն նման ոչ միայն
«մէկը չի խօսեցաւ», այլ եւ մէկը չապրեցաւ, որուն
ի տես ամէն մարդ կ'ուզէ ըսել, «Ահա Մարդը, որուն
նման պարտիմ ըլլալ», ու որուն նկարագրին հանդէպ
մարդ խղճին կրնայ պատասխանել թէ ի՞նչ է Աստուած,
ո՞վ է Աստուած, ի՞նչ որ չի կրցին պատասխանել բոլոր
դարերու փիլիսոփաները։ Եւ որուն «Իմ ետեւէս եկէք»
պատուէրին՝ մարդ կ'ուզէ ըսել, «Այո, Տէր, առաջնորդէ
զիս, պիտի ջանամ հետեւիլ Քեզի». կամ «Ինծի հա-
ւատացէք» հրամանին՝ ամէն մարդ կրնայ պատասխա-
նել, «Այո, Տէր, կ'հաւատամ, կ'վստահիմ, կ'յանձնուիմ
Քեզի, միայն Քեզի», եւ որուն «Ո՛վ որ ծարաւի է,
Ինծի թող գայ ու խմէ» հրաւէրին՝ մէկը չի կայ որ չըսէ,
«Այո, Տէր, ծարաւի եմ, դժգոհ ու անհանգիստ. կուրծ-
քիս տակ ցաւի ու վէրքի գաղտնիքներ թաղած եմ.
խմեցի աշխարհի աղբիւրներէն, բայց դեռ ծարաւի եմ.
ա՜հ, Քեզի կուգամ, Դուն ես իմ հոգիիս փնտռածը»։
Արդ, կ'ըսեմ, այն Մարդը, որ աշխարհ եկաւ, որուն
նմանին ոչ մէկն եկած է, աւելի անհաւատալի չի՞ պիտի
ըլլար, եթէ աշխարհի դռնէն մտնէր ու դուրս ելլէր այն
նոյն ճամբով, որով ուրիշ ամէն մարդիկ կ'մտնեն ու կ'ել-
լեն։ Այս անսովոր կեանքին համար սովորական դէպք
մը անբնական պիտի ըլլար։ Այսօրինակ կեանքի մը հա-
մար յարութիւնը, համբարձումը, եւայլն, կրնանք ըսել
թէ բնական են քան գերբնական. հակառակ պարագան
է անբնական։

Զի թերահաւատինք, ուրեմն, եւ ոչ անհաւանական կարծենք՝ երբ կ՚պատմուի Անոր վրայով — մանաւանդ ճշմարիտ վկաներու բերնով, որոնց նկարագրին վրայ պատճառ մը չունինք տարակուսելու — թէ քառասուն օր վերջ ձիթենազարդ լերան մը բարձունքէն երկինք **համբարձաւ**, եւ, հուսկ ապա, Իր ՄԵԾ խոստումը, Իր ամէն խոստումէ գեր ի վեր խոստումը կատարեց սովորական ամէն կերպերէ գեր ի վեր կերպով — կերպով մը՝ որ միայն Իր Մեծութեան յատուկ էր։

Այդ խոստումն էր «Զօրութիւն ի բարձանց», զոր կատարեց փառաւորապէս Պենտէկոստէի (50րդ) յաւէրժ յիշատակելի օրը՝ յետ յարութեան։

Հարկ չի կայ կրկնել Հոգեգալստեան դէպքին պատմութիւնը, որ ամենուն ծանօթ է իր յոյժ նշանաւոր հանգամանքով։

Քրիստոսի առաքեալք կոչուած ունէին կատարել շատ դժուարին ու մեծ գործ մը, որուն նման երբէք կատարուած չէ աշխարհի վրայ։ Անծանօթ, արհամարհուած, անարգուած Նազովրեցիի մը անունը պիտի քարոզէին հեթանոս ազգերու իբրեւ իրենց յոյսը եւ աղբիւրը փրկութեան։ Զուրկ էին ամէն պահանջուած ձիրքերէն։ Բացարձակապէս կ՚կարօտէին արտաքոյ կարգի գերագոյն, բարձրագոյն զօրութեան։ Անոնք երեք տարուան ընթացք մը վարած էին Քրիստոսի դպրոցին մէջ, ու աննշան յառաջդիմութիւն մը հազիւ իսկ ըրած էին։ Շատ բան լսած եւ ոչինչ հասկցած էին, այնքան թանձրամիտ արարածներ էին։ Ըմբռնած չէին Քրիստոսի վարդապետութեանց ոգին։ Ոչ միայն անգէտ էին, այլ եւ թերահաւատ։ Այնքան երկչոտ ու ողորմելի արարածներ էին, որ անոնցմէ ամենէն յանդուգնը, ծառայող կնոջ մը առջեւ, երեք անգամ զինք ուրացաւ։ Աւելորդ է խօսել անոնց բոլոր անճարակութիւններն ու

անկարութիւնները ։ Եւ, սակայն, առնք էին որ կոչուած էին Քրիստոսի հոգեւոր, յաւիտենական թագաւորութեան հիմունքը դնել, անվերջանալի, ահագին ազդեցութիւն մը ձգել բովանդակ մարդկութեան կեանքին վրայ ։ Եթէ չէք հաւատար գերբնական զօրութեան մը առաքման, եթէ Հոգւոյն Սրբոյ հեղման հրաշքին չէք ուզեր հաւատ ընծայել, ուրեմն պէտք է որ հաւատաք աւելի մեծ հրաշքի մը, աւելի անհաւատալի պատմութեան մը, — թէ՝ 10—12 անուս, անկարող, անպաշտպան Հրեայ ձկնորսներ ո՛չ դրամով, ո՛չ մտաւոր եւ ո՛չ ֆիզիքական ոյժերով՝ կարող եղան այս օրուան Քրիստոնէական Եկեղեցի կոչուած հոյակապ, մեծափառ, անհունածաւալ եւ անքակտելի շէնքը կառուցանել ։

Այս գործը մեծ էր, Պ. սկեպտիկներ, փիլիսոփայական դպրոց մը հիմնել չէր․ մարդիկը խաչակրութեան, անձնուիրութեան, ինքնուրացութեան, մեռնելու հրաւիրել էր անուանի մը սիրոյն ։ Միայն ջրով մկրտութիւն չէր անոնց քարոզութիւնը որ դիւրին ըլլար մտիկ ընել ու համոզուիլ ։ Ոհ, ո՛չ․ այս գործ շատ անսովոր, շատ արտակարգ, շատ անհնարին ու շատ գերմարդկային էր։ Ու յաջողիլ անոր մէջ, առանց արտակարգ, առանց գերմարդկային, գերբնական միջոցի մը, որ ի գործ դրուեցաւ հանդիսաւոր առաքումովն Հոգւոյն Սրբոյ զօրութեան, անհնարին էր ։

Արդ՝ չարհամարհենք Եկեղեցին, որ այնքան եռանդագին կ՚յիշատակէ այդ պանծալի օրը, յորում երկինքի սաստկաշունչ հողմով եւ երկինքի մեծ հրդեհով մը Աստուածային զօրութիւնն եկաւ, հանգչեցաւ կեանքի ու փրկութեան Աւետարանը տարածելու կանչուած տկար մարդոց վրայ, որոնք ցնցուեցան ու ցնցեցին, այրուեցան ու իրենց կրակով այրեցին, բռնկցուցին Պաղեստինն ու համայն հեթանոս աշխարհը ։

«Է՛հ, Ս. Հոգւոյն դարը չատո՞նց անցած է», կ'մըրթ-մըրթան ոմանք։ Վա՜յ խարէութեանս։ Եկեղեցին իր պատմութիւնն ունի, սիրելի տարակուսողներ, ինչպէս փիլիսոփայութիւնն ու գիտութիւնը, ինչպէս ընկերութիւններն ու բոլոր կազմակերպութիւնները։ Այս, պատմութիւնը, զանց ընելով նախկին դարերը, կ'արձանագրէ Պենտէկոստէի ամենէն ուժգին հովերը, որ անցնող դարուն վերջին քառորդին մէջ փչած են — հովեր՝ որ փոշի ու ամպ հանած են անապատներուն մէջ. հովեր՝ որ հեռաւոր ծովերը մրրկած են. հովեր՝ որ հասած, փոթորկած են մինչեւ ծայրագոյն Արեւելք ու ծայրագոյն Արեւմուտք։ Չէ՞ք տեսներ, չէ՞ք իմանար։ Ի՞նչ խորունկ թմրութիւն, արդարեւ։

Ամէն հրաշք պէտք էր դադրիլ ու դադրած է, բայց Հոգւոյն Սուրբ Եկեղեցւոյ միայնուն հրաշքն է։ Ամենամեծ հրաշքը, որ երբէք տեսած է մեր մոլորակը, Պենտէկոստէի հրաշքն է։ Եւ այն, այդ հրաշքներու հրաշքը, կայ ու կ'մնայ Եկեղեցւոյն մէջ ցկատարած աշխարհի։ Եթէ այս գերազանց պարգեւն առնուի Եկեղեցիէն, եթէ այն չի թափուի զանիկա կազմող անհատներուն վրայ, Եկեղեցին իրապէս կ'դադրի գոյութենէ, եւ Քրիստոսի կրօնքը կ'մեռնի իսպառ։ Եկեղեցին կ'ըլլայ յանժամ ցամքած աղբիւր մը, իւղը սպառած կանթեղ մը, համը կորուսած աղ. ու Աստուածաշունչը, նոյն իսկ, կ'ըլլայ փակեալ, կնքեալ գիրք մը։

Ամէն դարու մէջ աշխարհ կ'հարցնէ — «Բայց ի՞նչ նշան կ'ցուցնես որ հաւատամ»։ Հրա՛շք, հրա՛շք։ Ահա ի՛նչ որ միշտ խնդրած են մարդիկ։ Այլ եթէ Եկեղեցին կ'պահէ իր ծոցին մէջ Հոգւոյն Սրբոյ պարգեւը, եթէ կրնայ ցոյց տալ մեղաւորներ, հեշտասէրներ, ինկածներ, գերիներ կրից, կատաղի ինքնասէրներ, նիւթականացած, մարմնացած հոգիներ, դիւահար «լէգէոն»ներ, որ խելա-

բերուած, ազնուացած, փրկուած, նստած են Յիսուսի ոտից տակ, ա՛լ ի՞նչ պէտք են հրաշքներ, ապացոյցներ։ Քրիստոնէութեան ամենէն անհերքելի, հզօր, կենդանի ապացոյցն ու հրաշքն է Ս. Հոգւոյն զօրութիւնը, որոյ պտուղները — «Սէր, խնդութիւն, խաղաղութիւն, քաղցրութիւն», եւայլն, եւայլն — կ՚տեսնուին զայն ընդունող անձերու վրայ։ Եւ, ըսէք, ո՞ր զօրութիւն կրնայ խստացած, ապառաժացած, փճացած սիրտը վերանորոգել, յոռի, վատթարացած կեանքը յեղաշրջել, հոգւոյն բոլոր ցանկութեանց, բոլոր սիրոյն ուղղութիւնը փոխել. այնքան փոխակերպել մարդ մը՝ որ կարելի ըլլայ ըսել, «վերստին ծնեալ», «նոր արարած»։ — Ո՞րը դիւրին է ըսել՝ «Քու մեղքերդ քեզի ներուա՞ծ են», թէ «Ելիր ու քալէ»։ — Ո՞ր զօրութիւն կրնայ յառաջ բերել այս արդիւնքները. բայց անկէ՝ որ կ՚կոչուի «զօրութիւն ի բարձանց», որ կ՚կոչուի — ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ։ Ո՛հ, գիտութի՞ւնը պիտի ցուցնէք ինծի, մշակութի՞ւնը, կրթութի՞ւնը, որոնք — առանց ուրանալու անոնց իրական արժէքը — որոնք, այո, կրնան արուեստակեալ, հիանալի ծաղիկ մը յօրինել, կամ մարմար մը տաշել, յղկել, հրաշալի դիցուհի մը ձեւակերպել, որուն, սակայն, սիրտը քար է, ու չի տրոփեր, աչքերը քար են ու չեն տեսներ, ականջները քար են ու չեն լսեր։ Ինք համակ անհոգի, անշունչ, պաղ քար մ՚է, ո՛հ, քար մը։

Ուստի, այս տօնելի, խնկելի օրուան առթիւ, ահա ի լուր աշխարհի կ՚քարոզենք ու կ՚պնդենք թէ Հոգւոյն Սրբոյ զօրութիւնը խոստացուած է ու պիտի թափուի ամէն Եկեղեցիի ու ամէն անհատի վրայ, որ իր խորանին, իր սրբարանին, իր «վերնատան» մէջ կ՚հսկէ, կ՚յուսայ, կ՚խնդրէ ու Կ՚ԱՂՕԹԷ. — «Խնդրեցէք եւ տացի ձեզ»։

Աղօթե՛լ, այո, ի՛նչ, միթէ ոչի՞նչ կ՚թուի աղօթե-

*լը ։ Ցուսալ , սպասել , խնդրել — այս գործնական աշխարհն ոչի՛նչ պիտի անուանէ ։ Բայց աշխերտներ , առաքեալներ ու դարերու քրիստոնեաներ ըրին ամէն ինչ՝ ընելով «ոչինչ» ։ Այս «ոչինչ»ն յառաջ բերաւ բարոյական հեղեղը , որ մեծ Ամազոնի մը փոխուեցաւ ժամանակի ընթացքին մէջ , եւ ո՛ր երկրի եզերքներն որ համբուրեց , անցաւ , հոն բարութեան , խաղաղութեան , փառքի ու սիրոյ ծառեր ու ծաղիկներ փթթեցուց , պարտէզներ ու բուրաստաններ դալարազարդեց ։ Աղօթեցէ՛ք . ուրիշ միջոց չի կայ , բայց միայն այս պարզ միջոցը , Աստուծոյ սահմանած միջոցը — աղօթք , որով միայն «հոգին Հոգւոյն կ՚պատահի» , ըստ մեծանուն բանաստեղծի մը ։ Չէ՛ , մեր Աստուածը Կիպրացւոց խուլ աստուածը չէ ։ Ո՛հ , կ՚լսէ Ան ։*

*Աղօթեցէ՛ք . աղօթքը կ՚տանի ձեզ Աստուծոյ , որ կ՚նուիրէ հոգեւոր ոյժ , սփոփանք եւ ներշնչում ։*

*Ո՜ւր էր թէ անկեղծօրէն , ճշմարտապէս աղօթէինք , որ փչէր Պենտէկոստէի հողմն երկնային եւ մաքրէր մեր բարոյական մթնոլորտը , սրբէր , տանէր ամէն ապականութիւն մեր սրտերէն , ցրուէր մէգն ու մշուշը , որ մեր հոգին կ՚պատեն ։*

*Ո՛հ , եկո՛ւր , ո՛վ օրհնեալ , սրբազան հուր , թափուէ մեր եկեղեցիներուն վրայ , մեր եկեղեցականներուն վրայ , որ անոնք «վերնատուն»էն իջնեն՝ երբ ժողովուրդին մէջ կուգան . քանզի կորսուած հոգիներ չեն փրկուիր մինչեւ անոնք չի մկրտուին Հոգւով Սրբով ու սրբազան կրակով . ԱՄԷՆ ։*



# ՎԱՐԴԱՎԱՌ

## ԿԱՄ

# ԱՅԼԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՍԻ

---

*Վարդավառի վարդափառ, վառ ի վառ տօնին անզրքրիստոնէական հին, հին, հարազատ ու յարազարդ յուշքերով խնկավառ օրուան պատշաճութեամբ Հայ. Ս. Եկեղեցին կ'հռչակէ, կ'յիշատակէ դէպքը Փրկչին այն երկնատեսիլ, երկնափառ կերպարանափոխումին, որ ծանօթ է Այլակերպութիւն կամ Պայծառակերպութիւն անուամբ ։*

*Հարկ չի կայ կրկնել այս մեծ իրողութեան պատմութիւնը, որ իր համառօտութեան մէջ կ'ընդգրկէ անսահմանութիւնները կեանքի բարձրագունին մէջ — հոգեւոր կեանքի մէջ ։*

*Յիսուս, Տէրն մեր, ըստ Իր սովորութեան, ընկերակցութեամբ Իր երեք սիրելագոյն բարեկամաց, լեռ մը կ'քաշուի, հաւանաբար Հերմոն Լեռը, ու հոն յանկարծ անոնց առջեւ կ'այլափոխուի ։ Վեր կ'առնէ քօղ մը Իր մարդկեղէն դէմքէն, եւ փառքի, լոյսի պայծառափայլ ցոլացումներով պահ մը կ'նսեմացնէ արեւին ճառագայթները, կամ կ'լուսաւորէ նոյն իսկ լոյսը, անգամ մը եւս շեշտելով յաւիտենական ճշմարտութիւնը — «Ես եմ լոյսը» ։ Յանձին Անոր՝ Աստուածը կ'երեւնայ, եւ տե-*

սանելի Աստուծոյն մէջ անտեսանելին ի հանդէս կուգայ։ Մարմինի մէջ պահուած, ծածկուած Քրիստոսը գաղտնիքի մը պէս կ՚յայտնուի։ Այս աստուածագեղ արտափայլումներու յայտնութեանց մէջ լուսաւոր ամպի մը ետեւէն ձայն մը կ՚լսուի — «Դա է Որդի իմ սիրելի, Դմա լուարո՛ւք»։

Մինչ այսպէս կ՚ուզեմ շարունակել պատմութիւնս, ինձ այնպէս կ՚թուի թէ վերէն եկող նոյն ձայնին ընդդէմ ուրիշ ձայներ կ՚բարձրանան վարէն՝ ի զուր լսեցնելու համար զայն։ Բարեկիրթ, մեղմ, հմայիչ ձայն մը կ՚հնչէ ականջիս — «Բայց ես զարգացած, մշակուած մարդ եմ, վերջապէս։ Դատող, տրամաբանող, քննող միտք ունիմ, ու շատ հեռի եմ դիւրահաւան ըլլալէ։ Ապացոյց, կ՚աղաչեմ, դրական բան մ՚ըսէք՝ հաւատալի ընծայելու համար այդ բոլոր պատմութեանց մէջ անօրինակ, արտակարգ դէպքը»։

Ո՜հ, այս դրական մարդիկը. — Բայց դուք գիտէ՞ք ի՛նչ տեղի կ՚ունենայ, ի՛նչ կ՚անցնի, կ՚դառնայ լերան մը վրայ, ուր ոտք դրած չէք, զոր երբէք տեսած չէք։ Ո՞ր դրական փաստով կ՚ուզէք հասկնալ, կ՚ուզէք հաւատալ հոն փչող հովերուն, մթնոլորտին, ամպերուն ու ձիւնի կոյտերուն անվերջ, անհուն պատմութեանց։ Ուրիշ աշխարհ մ՚է այն երկրի ստորին տափաստաններէն։ Մէգի ու մառախուղի, անձրեւի ու փոթորկի ատեն յաճախ պէտք է հաւատալ թէ հոն՝ վերերը արեւ ու ամառ կայ։ Ո՛չ, ճախճախուտներու մէջ լողացող կրկառուն գորտ մը չէ կարող հաւատալ արծիւի կեանքին։ Պէտք է թեւ ունենալ եւ սաւառնիլ անոր բոյնին բարձրութեան սահմանը՝ լսելու համար հովին մռունչը կամ զեփիւռին սոյլը. տեսնելու համար արշալոյսին վերելքը բոց սանդուխին աստիճաններէն, ու վերջալոյսին անցքը՝ լոյս կամարին տակէն։

Գիտե՞ս դուն, ո՛ր լեռն էր այն, ուր Յիսուս ելաւ ։ Պաղեստինի լեռներէն ոչ մին էր այն, ո՛չ Հերմոնը, ո՛չ Թափորը ։ Յիսուսի ելած լեռը շատ բարձր էր քան բոլոր լեռները բովանդակ աշխարհին ։ Գիտե՞ս Ալպեանի գագաթներէն աւելի բարձր ու Էվէրէստի բարձունքէն աւելի վեր լեռ մը ։ Քու աշխարհագրական քարտէսներուդ վրայ չի կայ նշանակուած բարձրագոյն կէտ մը ։ Տիեզերքին ամենաբարձր լեռն էր այն, ուր Յիսուսի պայծառակերպութիւնը՝ տեղի ունեցաւ ։ Ու այս լեռը շատ տարիներ յետոյ Ս. Յովհաննէս, մին այդ խորհրդութեան վրայ հիացող վկաներէն, կոչեց «ՍՈՒՐԲ ԼԵՌ»ը ։

Ո՛վ Նիւթի, մարմինի ու աշխարհի մարդիկ, ո՛վ անտուրք հոգիներ, թօթափեցէք աղտերն ու ժանգերը երկրին եւ բոլոր անցաւոր իրերուն, եւ վեր ելէք «Սրբութեան Լեռ»ը, բարութեան, անկեղծութեան, մաքրութեան, անբծութեան, անմեղութեան բարձունքը, վերերը լուսաւոր, սուրբ, անարատ, վեհ ու ճշմարիտ կեանքին ։ Ու հաւատացէք, ո՛վ սկեպտիկներ, որ Աստուծոյ պիտի պատահիք, որ անտեսանելին պիտի տեսնէք, յաւիտենական հորիզոններուն պիտի դպչիք, հրեշտակներու նուագը պիտի լսէք, ու վար պիտի իջնէք երկինքի ցօղերով թրջուած, արշալոյսի առաջին ցոլքերով պճնուած, նորոգուած, օրհնուած, այլակերպուած ու պայծառակերպուած երեսներով ։

Ջե՞ք հաւատար հոգիի բարձրութեան, կեանքի լեռներուն խրական բարձունքին ու անոր ազդեցութեան, անոր հրաշալի արդիւնքին ։ Այլ ո՞վ չի հաւատար արուեստին բոլոր բարձրութեանց ։ Երաժշտութեան հմայքը հոգին կ'թռցնէ անծանօթ վերերուն անբաւութիւնները ։ Աննշան բլուր մը անգամ գեղեցիկ գաղափար ու բարձր խորհուրդ կ'ներշնչէ հոն կեցողին ։ Լերան մը կատարին վրայ հասնելու թէ մարդ մը կ'մնայ ըլլար ։ Ի տես արեւին

գռեհիկ անձ մը իսկ կարծես կ'թողու իր խաւարի կեանքը ու վայրկեան մը արեւը կ'զգենու ։

O՛հ, մաքուր ու բարի կեանքի բարձրութեանց սահմանները հանեցէք չարն ու մեղաւորը ։ Հոն հանեցէք անհաւատը ։ Տուէք անոր ալ Յիսուսի անբիծ սիրտը, անարատ հոգին, սուրբ, սպիտակ կեանքը, ու տեսէք որ նա պիտի այլակերպուի, պիտի լսէ ամպէն եկած ձայնը, պիտի ընդունի յայտնութիւններ, տեսիլներ, ու պիտի ըլլայ ճշմարիտ հաւատացեալ ։

Կեանքի այս լեռը, ուր Յիսուս ելաւ, խիստ բարձր է ։ Գիտութիւնը մեզ չի կրնար հանել հոն ։ Թեւերով ու թռիչներով չենք կրնար թռչիլ այդ բարձրաբերձ կատարները ։ Ի բաց թողուլ պէտք է ամէն ծանրութիւն ։ Յոյժ թեթեւ կեանք մը հարկ է, նման Յիսուսի կեանքին, որուն վրայ «այս աշխարհիս իշխանը» բան մը չէր կրնար գտնել ։ Ոչ մէկ ունայն ու տեսանելի առարկայի ցանկութիւն ունէր, որով կարող ըլլար Փորձիչը քաշել զինք, բռնել, փակել իր ամրոց վանդակին մէջ ։ Ո՛հ, ո՛չ ։ Նա այնքան դուրս կ'ապրէր նիւթի ու մարմինի կեանքէն, որ, ծանրութեան օրէնքէն զերծ՝ չէր իյնար վար. բայց նման արծիւին, որ դէպի արեւը կ'խոյանայ, կ'ձգուէր դէպի վեր, Լոյսին, Կեանքին, Բարւոյն, Աստուծոյ ։

Հրաշք չըլլար, այո, հրաշքը սուտ է ցած, ապականուած տեղերուն մէջ, աղտոտ, պիղծ կեանքի ստորին խորշերուն մէջ ։ Աստուծոյ ձայնը չի կայ, հրեշտակային տեսիլը, պայծառակերպութիւնը, եւայլն, երեւակայական են, նախապաշարում են, դիւրահաւանութիւն են ։ Այո, այլ ո՞ւր — Ցանկութեամբ, կիրքերով անձնասիրութեամբ, կեղծիքով, չարութեամբ ու մեղքով բթացած, խանգարուած ու կուրցած մտքին մէջ ու փճացած, մեռած սրտին մէջ ։ Այո, սուտ է, արեւ չի կայ, լոյս չի կայ գետնի խոռոչներու մէջ, գարուն չի կայ վի-

թափններուն մէջ , ձայն չի կայ , երաժ
խլուրդներու , ճճիներու բնակարանին

«Ո՞վ պիտի ելլէ Տէրոջը լեռը ,
Կամ ո՞վ պիտի կենայ Անոր սուրբ
Ձեռքերով սուրբը ու սրտով մաքր
Որ սնոտիութեան անձնատուր չեղաւ
Եւ նենգութեամբ երդում չըրաւ» ։

Հոն՝ այդ լերան վրայ այլակերպեց
այդ լեռը կոչուած է նաեւ «Աղօթքի Լե
այդ պահուն կ'աղօթէր ։ Ո՛հ , ի՜նչպէս
տէ՞ք , ի՜նչ էր աղօթելն Անոր համար
կ'առանձնանար Հօրը հետ ։ Աղօթել կ'նշ
նմանիլ Աստուծոյ հետ ։ Եւ ո՞վ երբէք
նման Անոր ։ Ծովուն փրփուրներուն վր
նաւորդ մը , որ բիրտ կոհակներու խուլ
կ'լսէ , կամ հեռաւոր անապատներու
կորսուող հոգի մը այնքան միայնակ չ
Ինք , որ կ'մեկուսանար , կ'քաշուէր
զԱստուած գտնելու ու Անոր հետ մին
մար ։ Իրեն ու Անոր միջեւ ոչինչ կ'գտն
ու Հայրը կար ։ Իր մտածումները , խո
կերակցութենէն անգամ բաժնուած՝ մի
հետ , այնքան մօտ Անոր որ կրնայ ըսու
մէջ էր ։ Այսպէս կ'աղօթէր Նա ։ Աղօթ
գրկել էր զԱստուած , կառչիլ , միանալ
հետ , իյնալ էր Անոր լուսալիր գրկին մ
Անոր էութեանը ծոցին մէջ ։

Ո՛հ , այս է ճշմարիտ աղօթքը ։
աղօթել ։ Կ'աղօթէ՞ք այսպէս ։ Ելա՞ծ է
բարձր լեռը ։ Ուրեմն ո՞վ է սուտը , դո՞
չալի դէպքերը, որ տեղի ունեցեր են ու
բերը՝ սրբութեան , աղօթքի ու աստու

բարձունքներուն վրայ։ Լոյսէն հեռի խաւար կայ. արե-գակէն հեռի ձմեռ կայ, ցուրտ կայ, մահ կայ։ Երանի՜ անոնց որ սրտով ու մաքրով միշտ վերերը կ'ապրին, կ'ծծեն վճիտ օդը, որ երկնից լեռներէն կ'փչէ. կ'խմեն այն գետերէն որ Աստուծոյ քաղաքէն կ'բղխին։ Անոնք Տէրը կ'տեսնեն, Անոր ձայնը կ'լսեն։ Անոնք զօրութենէ ի զօրութիւն կ'երթան, փառքէ ի փառք, կեանքէ ի կեանք, լոյսէ ի լոյս՝ մինչեւ որ Սիօնի մէջ Աստուծոյ առջեւ երեւնան։

Յամառ ձայն մը կ'կրկնէ ինձ սակայն. — «Գէթ չեմ կրնար հաւատալ 'այն կարծեցեալ Աստուածային ձայնին — Դա է Որդի իմ սիրելի, եւայլն. Յիսուսի հեղինա-կութիւնը հաստատելու համար հնարուած ըլլալ կ'թուի այն»։

Եթէ սուտ է այս ձայնը, սխալ է այս յայտարա-րութիւն, դժուար չէ ստուգել։ Դուն հիւանդ ու անօ-կար մարդ ես, անբուժելի ախտով մը կ'տառապիս տա-րիներէ հետէ։ Մարդկային դարմանումներ, արուեստի կատարելութիւն քու վիճակդ չի բարւոքեցին, եթէ չի վատթարացուցին։ Ու ձայն մը, ծանօթ կամ անծանօթ, վստահելի կամ ոչ, քեզ մատնանիշ կ'ընէ նորանուն Անձ մը ըսելով, «Ահա ամենամեծ Բժիշկը, Անոր մօտիկ ըրէ, ու պիտի ապրիս»։ Այս խօսքին ճշդութիւնը ստու-գելու համար՝ կ'երթաս, կ'գտնես ցոյց տրուած Անձը, ու Ան, հպումով մը ձեռաց, կ'բժշկէ քեզ։ Եթէ հիւանդ ես՝ կ'առողջանաս, կ'նորոգուիս. եթէ կոյր ես՝ կ'տես-նես. եթէ կաղ ես՝ կ'քալես. եթէ մեռած իսկ ես՝ կ'կեն-դանանաս։ Ո՜հ, ըսէ, սո՞ւտ է այդ ձայնը, կախար-դութի՞ւն է, պատրա՞նք է։

Երեք Աւետարանիչներ կ'պնդեն թէ գերմարդկային ձայն մ'էր այն։ Հայրն էր որ ըսաւ, «Ասիկա է իմ սի-

րեւլի Որդիս, առոր մտիկ ըրէք» ։ Ջէ՞ք հաւատար թէ ատիկա Աստուծոյ Որդին է ։ Մարդ մը աստուածացնելու համար՝ ճարտարամիտ հնա՞րք մ'է, կ'ըսէք։ Ուրեմն, պացէք, տեսէք այդ էակը ։ Տեսէք թէ յանձին «Որդւոյ մարդոյ» նաեւ Որդի Աստուծոյ չէ՞, Անոր սիրելի Որդին չէ՞ ։ Գացէք, հիւանդ հոգիներ, կոյր միտքեր, ապականուած, անզգայացած, մեռած սրտեր, գացէք «Որդի»ին, որ դպչի ձեզի, որ ակնարկ մը ձգէ ձեր թշուառ կեանքին վրայ ։ Ո՛հ, դիմեցէք Անոր ու տեսէք՝ Անիկա չէ՞ մեծ Բժիշկը, ճշմարիտ Բժիշկը ։

«Լուարու՛ք զմա», — ի՛նչ ազդու, ի՛նչ հզօր, ի՛նչ հրաշալի, ի՛նչ ճշմարիտ ու, նոյն ատեն, ի՛նչ տրամաբանական ձայն մ'է այն — «Առոր մտիկ ըրէք» ։ Եթէ Անոր «որդի»ութեան ապացոյցը կ'ուզէք, եթէ համոզուիլ կ'ուզէք թէ յիրաւի Անոր Որդին է, Հօրը ծոցէն ելած, Անկէ ղրկուած, ուրեմն մտիկ ըրէք ԻՐԵՆ ։ Իրեն, ո՛հ, Իրեն, ուղղակի Իրեն մտիկ ըրէք, Իր իսկ ձայնը լսեցէք, ու պիտի հաւատաք ։ Միշտ ուղիղ չէ ըսել, «Պէտք է նայիլ ի՛նչ կ'ըսեն խորհող միտքեր, ի՛նչ ըսած է Վոլդէր, ի՛նչ կ'ըսէ Ռընան, ի՛նչ կ'ըսեն այլք» ։ Ո՛չ, ո՛չ, ամենէն արժանահաւատ, ամենէն վստահելի աղբիւրն Ինքն է, Իրեն մտիկ ըրէ, տես, ի՛նչ կ'ըսէ Ինք ։ Ոչ ոք կրնայ զՔրիստոս յայտնել, ծանօթացնել քեզ՝ քան նոյն ինքն Քրիստոս ։ Վարդը վկայ չուզեր, ոչ ալ սպիտակափառ շուշանը ։ Գնա քու քիմքովդ բուրէ «Սարոնի Ծաղիկ»ը, «Հովտին Շուշան»ը ։ Գնա, տես արեգակը չէ՞ այն, որուն վրայ, Շէյքսփիրի ոճով, նոր լոյս մը չես կրնար յաւելուլ ։ Գոհարը չէ՞ այն, որուն վրայ փայլ մը չես կրնար աւելցնել ։ Եթէ մարդիկ լսէին Քրիստոսի, պիտի հաւատային Իրեն, պիտի սիրէին զԻնք ։ Անո՛ր համար կ'տարակուսին սկեպտիկները, անո՛ր համար չեն կրնար հաւատալ, զի չեն ուզեր շիտակ Անոր դիմել,

Անոր բերնէն լսել։ Տեսնուած չէ անհատուառ մը, որ ի վկայութիւն կոչած ըլլայ գՔրիստոս, որ կարող ըլլայ գՔրիստոս իրեն դէմ հանել։ Չի կայ մէկը որ ճանչնայ զՑիսուս, առանց զԱնիկա, լսէ Անոր ձայնը ու միայ տարակուսանաց մէջ, միայ մեղքին մէջ։

Ո՞վ երկրի ծայրերը, Անոր մտիկ ըրէք։ Ո՛հ, փորձով իմացէք թէ Նա չի՞ խօսիր բուն իսկ սրտին։ Տեսէք, չի՞ պատասխաներ հոգւոյն բոլոր բաղձանքներուն, կեանքին բոլոր պահանջումներուն։ Անոր մտիկ ըրէք։ Տեսէք, կա՞յ այլ ձայն, որուն մէջ այնքան երաժշտութիւն, այնքան հմայք, այնքան կորով, այնքան սէր ու համակրանք ըլլայ։ Տեսէք, այս լեզուն Հոգւոյն լեզուն չէ՞, այս ձայնն երկինքի ձայնը չէ՞։ Լսեցէք, բժշկութիւն չի կա՞յ, յոյս չի կա՞յ, լոյս չի կա՞յ, կեանք չի կա՞յ Անոր ձայնին մէջ։ Ո՛հ, լսեցէ՛ք։

Մտիկ մի՛ ընէք աշխարհի ձայնին, կրից ու մարմնի ձայնին։ Դեւին ձայնն է այն, որ աւերում կ'առաջնորդէ ձեզ. մահ կայ անոր մէջ։ Բայց մտիկ ըրէք «սիրելի Որդւոյն», ու բնաւ պիտի չի մոլորիք, պիտի չի սխալիք, պիտի չի կորսուիք։ «Անոր մտիկ ըրէք, ու պիտի ապրիք»։

# ԽԱՉՎԵՐԱՑ

---

Քրիստոնէութիւնը, ինչ որ ալ ըլլայ մեր գաղափարն անոր նկատմամբ, որքան ալ սառն անտարբերութիւն ցուցունենք հանդէպ անոր անսահման յաւակնութեանց եւ պահանջումներուն, այլ տակաւին Քրիստոնէութիւնը, կ'ըսեմ, այն կրօնքն է, որ իր յամառ, անյողդողդ յառաջընթացութեան մէջ գործած է

ՉԱՐՄԱՆԱԼԻ ՑԵՂԱՇՐՋՈՒՄՆԵՐ

Այնքան արմատական եւ տարօրինակ փոխակերպութիւններ, մանաւանդ տարօրինա՛կ։ Գիտէ՞ք պատմութիւն մը յեղաշրջումի, որով բացարձակապէս անօթ նշանակող իր մը ՓԱՌՔԻ նշան ըլլայ բոլոր աշխարհի մէջ։ Կարելի՞ է ուրանալ թէ աննկատելի ազդեցութիւն մը կամ աննշան յեղաշրջում մը չէ հիմնովին փոխել կամ հակառակ ուղղութիւն մը տալ մարդկային խորհուրդին, գաղափարի առանցքին՝ ի մասին այն նշանին, որ կ'կոչուի ԽԱՉ։ Այս կ'նշանակէ գետի մը ընթացքը դարձնել ճիշդ հակառակ կողմը։ Հռովմէական գազանային անգթութեան մէկ յղացումը, դիւական հնարքը, մահու ամենէն անարգ գործիքը՝ յատկացեալ անօրէններու, չարագործներու, անզգամներու, որոնց պատուաւոր, հանգիստ մահ մը կ'զլացուէր, բիրտ խաչափայտ մը, որ բերնի թուքով միայն կ'ծածկուէր, բոլոր դարերու մէջ զարդն եղած է կուրծքերու, նշանն եղած է պատիւի

ու մեծութեան, պաշտումն եղած է բերաններու, սըր-
քութիւնը՝ տաճարներու եւ խորաններու, հոգին եղած է
Քրիստոնէական քարոզութեան ու երկրպագութեան։
Մահուան փայտը փոխարկուած է «կենաց փայտ»ի։
Արհամարհուած, խայտառակուած նշան մը փառաբան-
ուած է մինչեւ երկինք։ Հասարակ երեւոյթ մը չէ այս,
զոր կրնաս առանց դիտելու՝ կեանքիդ ճամբան շարու-
նակել։ Ի՞նչ ճակատագրային պատմութիւն։ Ի՞նչ յայտ-
նութիւն կ'հռչակուի անով. հարցո՛ւր

ԻՆ՞Չ Է ԳԱՂՏՆԻՔԸ

Խաչի պարզ նշանին՝ մէջ կախարդական հմայք մը
չի կայ, մոգական փայտ մը չէ այն։ Անոր տիրապետող,
դիւթական զօրութիւնն ոչ այլ ինչ կրնայ ըլլալ, բայց
միայն երկնային։ Անոր բացատրած գաղափարը, յայտ-
նած խորհուրդը եւ հռչակած յաւիտենական ճրդու-
թիւնը կոչում կ'ընեն մարդկային մտքին, կ'գերեն սիրտը,
կ'գրաւեն վստահութիւնն ու հաւատքը։

Ի՞նչ է գաղտնիքը, ի՞նչ գերազանց պատճառ կայ
որ այն օրէն ի վեր՝ երբ այդ ամօթի ու նախատինքի
նշանը, չարագործներու խաչը՝ կոչուեցաւ «Քրիստոսի
խաչը»։ Պօղոսէն սկսելով մինչեւ ցարդ մարդիկ կատար-
եալ անկեղծութեամբ ու եռանդագին կրկնեցին նոյն բա-
նաձեւը — «Այլ ինձ քա՛ւ լիցի պարծիլ՝ բայց միայն ի
խաչն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։

Ի՞նչ ըսել կ'ուզէր Պօղոս այս խօսքով։ Ինչո՞ւ
կ'պարծէր միայն Քրիստոսի խաչով։ Յիմարացե՞ր էր
արդեօք այս ամենէն աւելի տրամաբանող մեծ միտքը։
Խաչին նկատմամբ զզուանք ու նողկանք սնուցանող,
այդ անարգ փայտին վրայ ամէն կախուողի դէմ պժգանք
զգացող, Քրիստոնէութեան անունին դէմ նախապա-
շարուող՝ հալածիչ, մոլեռանդ Հրեայ փարիսեցի մարդը
ի՞նչ արմատական յեղաշրջում կրած էր, ի՞նչ հաս-

տատատուն, անչարժ կռուան գտած էր համոզումի, որոյ վրայ իր ոտքը դրած՝ ի լուր աշխարհի կ՚հրատարակէր թէ չուզեր ուրիշ ո՛չ մի բանով պարծիլ, բայց միայն խաչովն Յիսուսի Քրիստոսի ։ Մոռնալ իր գրագէտի տաղանդը, իր փիլիսոփայական մտածումները, իր բարձր դիրքը, իր համբաւը, եւայլն, ու Անոր Թուքը, անօթը՝ նախատինքը իրեն պարծանք, իրեն փառք ու պսակ ընտրել ։ Օ՜հ, հարցնել կուտայ մեզի թէ ինչո՞ւ։ Ի՞նչ է

ԽԱՉԻՆ ՆՇԱՆԸ.

Այս հարցումին պատասխանը պարզ է, չատ պարզ ։ Ո՛չ աստուածաբանութիւն կայ անոր մէջ, ո՛չ վարդապետութիւն, ո՛չ աքոլաստիք դրութիւն, ո՛չ կրօնական ֆանդէզի ։ Անոր պատասխանը գործնական, իրական ճշմարտութիւն մ՚է. դիւրըմբռնելի ու չօշափելի ճշմարտութիւն մը, սա գերազանց ճշմարտութիւնը —

Քանզի խաչը նշանն է Աստուծոյ անհուն, անչափ սիրոյն :

Խաչին վրայ Աստուծոյ կուրծքն էր որ պատռեցաւ, ուսկէ հոսեց Անոր սրտին սիրոյ գետը յորդառատ, ու ողողեց, ծածկեց մարդկութիւնը բովանդակ ։ Աստուծոյ մարմնացած, մարդացած սէրն էր խաչին վրայ ջլատուած ։ Խաչը սոսկ խաչափայտ մը չէ, այլ խորհրդանիշն է բանի մը որ անոր ետեւ կ՚կենայ։ Պէտք չէ նախապաշարուիլ իրի մը երեւոյթով ։ Խորը նայեցէք անոր, հարցուցէք՝ ինչի՞ նշանակ է այս բարձրացուղ խաչը ։ Ու երբ ըմբռնէք անոր խորունկ նշանակութիւնը — ՍԷՐԸ, պիտի համոզուիք թէ կ՚արժէ կեանքին առանցքը նկատել զայն, ու մարդուն բոլոր գործքերը նոյն կենդանի սկզբունքին վրայ հիմնել ։ Սէ՜ր, ուրիշ ի՞նչ կայ արժանի կեդրոնն ընելու ճշմարիտ, վսեմ կեանքի մը ։ Ու խաչը ոչինչ կ՚նշանակէ, բայց միայն խորունկ, ամբաւ, անսահման սէր, տիպար սէր, որ կրնայ մարդուն կեանքին ուղղու-

թիւնը փոխել, անոր մոլար գնացքը ուղղել, ազնուացընել, բարձրացնել, փրկել մարդը։

## ԽԱՉԻՆ ԱՒԵՏԱՐԱՆԸ

Օ՜ն, խաչը՝ Աւետարանն է. ամբողջ Աւետարանին խտացումը։ Պօղոսի քարոզած Աւետարանն էր «խաչեալ Քրիստոս». ու այդ Աւետարանն էր անոր յաղթութեան գաղտնիքը։ Անոր քարոզած Աւետարանը խաչին Աւետարանն էր։ Իր քարոզութեան պերճութիւնն եւ տիրող ազդեցութիւնն այն Աւետարանին մէջ կ'կայանար։ Անով էր որ բարոյական «ամրոցները կ'քանդէր», ու հպարտ մտքերը կ'բերէր, կ'խոնարհեցնէր խաչին տակ։

Ո՛չ, Աւետարանն երկիւղի կրօնք չէ. մտրակ ու խարազան չունի այն։ Խաչը կ'ըմբերանէ այն տգէտ անհաւատները, որոնք կ'առարկեն թէ Աւետարանը պատժով, երկիւղով, մահով ու դժոխքով կ'հնազանդեցնէ միամիտ հետեւողները։ Սուտ է, կամ կ'անգիտանայ Ինկէրսոլ, երբ կ'ըսէ թէ «Քրիստոնէութիւնը երկիւղի կրօնք է»։ Երբէ՛ք. ցորչափ խաչ մը կայ Աւետարանին մէջ, խաչ մը՝ եկեղեցիին մէջ, խաչ մը՝ եկեղեցականին ձեռքը, այն պիտի հերքէ ամէն ամբաստանութիւն, պիտի աղաղակէ բարձրաձայն թէ՝ Քրիստոնէական կրօնքը սիրոյ ու մի միայն սիրոյ կրօնք է։ Անոր յաղթութիւնը, ոյժը, զէնքը միայն սէրն է։ Ո՛վ որ սիրով չի ծառայեր Քրիստոսի, ո՛վ որ ուրիշ ազդեցութեամբ կ'ձգուի Անոր կրօնքին ու պաշտաման՝ ու ոչ սիրոյ Նուրբ թելով, նա անծանօթ է կրօնքին ալ, Քրիստոսի ալ։

Հարցուցէք Պօղոսի՝ է՞ր այսքան ցաւ, հալածանք, զրկում, բանտ, մահ, եւայլն, ու մէկ բառով պիտի ըսէ ձեզ, — Քանզի «սէրը կ'ստիպէ զիս»։ Ահա ստիպող, բռնադատող զօրութիւնը — սէրն՝ որ ի յայտ եկած է, որ մարմնացած է, որ զգալի, հպելի եղած է, որ «եօթնպատիկ պայծառ քան զարեւ պայծառաց-

եալ է» ԽԱՉԻՆ ՎՐԱՅ ։ Աւետարանին ամենէն աւելի լուսաբանող մեկնութիւնը խաչն է ։ Խաչին խորհուրդը Աւետարանին ամփոփումն է ։

## ԽԱՉԻՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆԸ

Այն խաչը, զոր Ս. Եկեղեցին կ'ուզէ պանծացնել, կ'ուզէ բարձրացնել, վերացնել այսօր, չի ներկայացներ հեթանոսական ու, նոյն իսկ, Ղեւտական անմեղ զոհ մը, որ Աստուածային անողոք արդարութիւնը գոհացընելու կամ Անոր սրտմտութիւնը մեղմացնելու համար կ'մատուցուէր, որոյ միջոցով ապաշխարութիւնը, մեղաց թողութիւնն ու հաշտութիւնը կ'ապահովցուէին ։ Այլ ցոյց կուտայ **Քրիստոնէական** Զոհը, Աստուծոյ Ողջակէզը, որ երկնային **մէքոտն** է, եւ որոյ միջոցով ողորմութիւնը կ'ընձեռուի մեղաւոր կեանքին ։ Ահա խաչին փիլիսոփայութիւնը, — յանցաւոր զաւկին զոհը չէ, որով ներում կ'ընդունի իր մօրմէն, այլ մօրը զոհն է, որ ապաշխարութիւն յառաջ կ'բերէ ։ Մարդուն կողմէն, կամ իրեն համար մատուցուած զոհ մը չէ որ արդար օրէնքի մը տրամադրած անխուսափելի պատիժէն ազատ կ'կացուցանէ զինք, հապա այն Զոհն է, զոր Աստուած Ինք մատուցեր է Իր կողմէն, որոյ միջոցով մեղաւոր մարդը կ'ապաշխարէ ու կ'փրկուի ։

Սերտեցէ՛ք այս յաւիտենական դասը. ասոր պէս խորունկ գիտութիւն չի կայ ։ Խաչին գիտութիւնը, ու խաչին փիլիսոփայութիւնն է այս ։

Աստուած Իր խաչեալ Որդիովն ըսաւ կորսուած, մեղապարտ մարդուն, «Կ'սիրեմ քեզ բուռն սիրով ։ Պատրաստ եմ ներել քեզ, արդարացնել, սրբացնել քեզ ։ Կ'ուզեմ սեղմել քեզ կուրծքիս վրայ այն թեւերով, որ խաչին վրայ տարածուած են ։ Կ'ուզեմ հասնիլ, բռնել, գրկել քեզ այն ձեռքերով, որ ծակուած ու գամուած են ։ Ո՜հ, չեմ ուզեր որ մեռնիս, սիրելիս, որդիս

եւ դուն, սիրտս կ'մորմոքի վրադ, աղիքներս կ'գալարին, կ'սիրեմ, կ'երդնում որ կ'սիրեմ։ Զե՞ս հաւատար. ահա իմ արցունքս, որ կ'հոսի Քրիստոսի աչքէն. ահա իմ երակացս արիւնը, որ կ'բղխի Որդւոյս կողէն. ահա իմ Զոհս խաչին վրայ յանձին Անոր»։

Այս սէրն է, այս աննման սէրը, որ ցոյց կ'տրուի խաչով։ Ու իմ կարծր սիրտս կ'խորտակէ, ամբարտաւան գլուխս կ'խոնարհեցնէ, զղջման արցունք կ'բերէ աչքերէս, ու զիս գերի կ'ընէ Անոր։ Ինքն է որ կ'զիջանի խաչին վրայ, եւ դարձ ու ապաշաւ կ'ծնուցանէ սրտիս մէջ, ու ա՛լ չեմ կրնար պաշտել աշխարհի հրապոյրները։ Կ'յօժարիմ փշրել այն թերափիմները, որոնց առջեւ սիրտս կ'ծնրադրէ։ Կ'համոզուիմ կտրտել սիրած ու երկրպագած կուռքերս։ Ո՛հ, կ'ուզեմ խաչը իմ փառքս ընել, ու Պօղոսի հետ կրկնել — «Քաւ լիցի որ պարծենամ բայց միայն Յիսուսի Քրիստոսի խաչով»։

ԱՆԱՐԺԱՆՆԵՐՈՒՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՍԷՐԸ

Խաչին յայտնուած սէրը ցոյց տրուած է մեզ այն ատեն երբ մեր մէջ կաթիլ մը սէր չէր գտնուեր Անոր նկատմամբ։ Այն անգին, անըմբռնելի Զոհն եղաւ, մինչ մենք մազ մը իսկ զոհելու յօժարամիտ չէինք։ Ո՛հ, Ան սիրեց մեզ, մինչ մենք անարժան էինք Անոր սիրոյն, — «Ցայսմ է սէրն, ոչ զի մեք սիրեցաք զԱստուած, այլ զի Նա սիրեաց զմեզ, եւ առաքեաց զՈրդին Իւր ի քաւութիւն մեղաց մերոց»։ Այս սէրը չի նմանիր մարդկային սիրոյն. մենք կ'սիրենք զանոնք, որ համակրելի են, որ սիրելի են իրենց ոեւէ մէկ բարեմասնութեամբ։ Այլ Նա սիրեց մեզ մինչ մենք թշնամի էինք Իրեն, մինչ մենք դատապարտելի էինք մեր կեանքով։ Այս սէր սպառում չի գիտեր, վերջ չունի, դեռ կ'շարունակուի ու կ'հետապնդէ մեզ, մինչ մենք կ'փախչինք Իրմէ։ Կ'հալածէ մեզ կորստեան ճամբուն մէջ, մեր ե-

տեւէն կ'կանչէ , կ'հառաչէ , կ'սպասէ մեր դարձին ։ Մեզ հոգեւորապէս ինկած , վիրաւորուած կ'գտնէ, ու սիրելէն չի դադրիր ։ Անոր սէրը , Անոր պատարագն ու քաւութիւնը անցեալոյն համար չեն միայն ։ Քրիստոս միշտ Փրկիչն է մեր հոգւոյն՝ երէկ , այսօր , վաղը ու յաւիտեան ։ Անոր սիրով ու զօրովը պիտի սնանինք , պիտի աճինք մենք ցվերջ , ինչպէս մանկիկ մը՝ իր մօր գրկին մէջ ։ Ո՜վ յուսահատ մեղաւոր , ամէն անգամ որ խաչին կ'նայիս , գիտցիր որ այն լռիկ խօսք մը ունի քեզի ուղղուած — «Քեզ կ'սիրեմ , քեզի համար կ'մեռնիմ . քեզի յոյս կայ» ։

ԽԱՉՆ ՈՒ ԽԱՉԵԱԼԸ

Կ'յարգենք խաչը ։ Պատուական է այն մեզ համար ու նուիրական , քանզի կ'շեշտէ Քրիստոսի շնորհքը , ողորմութիւնը ու սէրը . քանզի կ'յիշեցնէ մեզ նոյն ինքն Քրիստոս — Խաչեալը ։ Խաչին նշանը կ'զուգորդէ մեր մտաց Աստուծոյ զարմանալի համբերութիւնը , անյիշաչարութիւնը ու քաղցրութիւնը ։ Խաչին վրայ կ'կարդանք Անոր ամենէն փառաւոր , ամենէն սիրուն անունը — «Հայր», ու անոր ոտքերին ներքեւ կեցած, կ'գոչենք, «Ո՛վ մեր Հայրը» ։ Ո՛վ որ կ'օրհնէ խաչն ու չի յիշեր Խաչեալը — զՔրիստոս , միտք չի բերեր Աստուծոյ սէրը, պաշտօն կ'ընծայէ նշանին , անջատ նշանակեալէն , անիկա հեթանոս ու կռապաշտ է ։ Բայց ցորչափ խաչն ու Քրիստոս անբաժան կ'մնան մեր ըմբռնումին մէջ , ցորչափ մեր հոգւոյն մէջ անկուած չէ անքրիստոս խաչ մը, մենք կ'գտնուինք ամենէն ապահով , ամենէն տրամաբանական եւ ուղիղ ճամբուն մէջ, որ կ'առաջնորդէ վսեմ կեանքի , յաւիտենական կեանքի ։

ՎՇՏԱԿՐՈՂ ՍԷՐԸ

Նախ, խաչով յայտնուած սէրը՝ ցաւող ու վշտակրող սէր է ։ Սէրն երկու տեսակ է ։ Կայ սէր որ կ'գործէ,

այլ կայ սէր որ ցաւ կ'զգայ։ Վերջին տեսակն է գերազանց սէրը՝ Քրիստոս բարեգործ, մարդասէր մը չէր սոսկ։ Նա միայն չի յագեցուց նուաղեալ ժողովուրդը, չի պատեց վէրքերը, չի բժշկեց հիւանդները, չի լուսաւորեց մտքին ու մարմինին աչքերը, չափոխեց կորած սիրտերը, չի ներեց, չի թողուց մեղքերը։ Ասիկա այն սէրն է որ գիտէ բարիք գործել միայն։ Կայ տուայտող, տառապող, վշտակիր սէր մը՝ Եւ այս է բարձրագոյն, խորագոյն սէրը, ու այս սէրն էր զոր Աստուած ցոյց տուաւ ի Քրիստոս Յիսուս, չարչարուելու, տանջուելու եւ սպաննուելու մատնելով զնա խաչին վրայ։

Ո՜հ, խաչով ցուցուած սէրը ցաւող սէր էր, Աստուծոյ սրտին ցաւն էր, սիրոյ ցաւը։ Ամենաբարձր աստիճանի մարդասիրական գործն իրեն հետ կ'բերէ ինքնահաճութեան մխիթարական զգացում մը, որ կրնայ չափով մը հատուցում համարուիլ մարդասէրին։ Սակայն ո՛րքան ծանր է, ո՛րքան դժուար է ցաւիլը։ Սիրել՝ ոչ թէ բարիք ընելով, այլ խորունկ վիշտ զգալով։ Գերազանց սէրն յանիժամ ինքզինք կ'յայտնէ, երբ արցունքով կ'մկրտուին բարեսիրական գործերը։ Դուն կրնաս խնամել հիւանդ տղայ մը, բայց կրնա՞ս զգալ այն ցաւագին տագնապը, զոր կ'զգայ հիւանդին սնարին փակչող մայրը։ Դիւրին է սէր ցուցնել մէկուն՝ բարիք ընելով անոր, այլ կրնա՞ս մասնակից ըլլալ անոր ցաւին, կրնա՞ս տագնապիլ անոր հետ, կրնա՞ս բաժանորդ ըլլալ անոր նախատինքին, ամօթին, յանցապարտութեան, անոր վատահամբաւ անունին, բախտակից ըլլալ անոր սեւ բաղդին, կցել ճակատագիրդ անոր դատակնքուած ճակատագրին։

Օհ, այս սէրն էր, այս Աստուածային, անհաս, անճառ սէրը, որ պայթեցաւ, պոռթկաց խաչին վրայ, մինչ Քրիստոս մարդուն հետ, մարդուն տեղ ու մարդուն

մէջ կ'ամչնար, կ'խայտառակուէր ու, վա՜յ ինծի, Մարդը կ'ըլլար, մեղք ու անէծք կ'նկատուէր, եւ, վերջապէս, կ'տանջուէր, կ'վշտակրէր երկնից հարուածին տակ։

Ահա այս է պատճառը որ երբ խաչին ներքեւ կու գանք, կ'տեսնենք սիրոյ բարձրագոյն կէտը, անյատակ խորքը, կամ անոր անհուն ընդարձակութիւնը։ Քրիստոս «սիրեց իւրայինները եւ սիրեց ցվերջ»։ Եւ այս «վերջ»ն էր խաչը։ Փա՜ռք խաչին, որ կ'յայտնէ թէ անոր վրայ խաչուողին սէրը բարերարի մը սէրը չէ, այլ վշտակրող Հօր մը սէրը, ծարուող, մորմոքող, մեռնող սէր մը։

ՈՍԿԻ ԶԱՆԳԱԿԸ

Թոյլ տուէք որ կրկնեմ, հեղ մ'ալ հնչեցնեմ, ուրեմն, ոսկի զանգակը։ Բարձրաձայն քարոզեմ թէ խաչը նշանն է սիրոյ, Աստուծոյ սրտին մէջ բունկող, բոցավառող սիրոյն, այն սիրոյն, որ կրակին մէջ կ'բուրէ ու ցաւին մէջ կ'յայտնուի։ Այս հնոցին մէջ է որ կ'հալի հաւատացեալին փառամոլութիւնն ու ինքնասիրութիւնը, չոգի կ'ըլլայ հպարտութիւնն ու ամէն ինչ։ Այս անմահ, յաւիտենական սէրը ոչ այլ ուրեք՝ բայց միայն խաչին վրայ ի տես կուգայ։ Ու ճիշդ ասոր համար խաչն պարծանքը եւ փառքը կ'ըլլայ Պօղոսին ու ամէն անկեղծ քրիստոնէի։

ԱՄԵՆԱԿԱՐՈՂ ԱՆԿԱՐՈՂՈՒԹԻՒՆԸ

Ասկէ զատ խաչին վրայ ցուցուած սէրն ուրիշները սնուցանող եւ ինքզինք սպառող սէր է. ուրիշները ապրեցնող ու ինքզինք զոհող սէր է։ Հրեայք մեծ ճշմարտութիւն մը յայտնեցին անգիտակցաբար, ինչպէս դիտել տուած է մեծ քարոզիչ մը, երբ ըսին անոնք, թէպէտ հեգնօրէն, թէ «Ուրիշներն ազատեց եւ ինքզինքը չի կրնար ազատել»։ Այո, սէրը չի կրնար։ Ամենէն ուժեղ հայրը չի կրնար իր անձն ազատել ու որդին կորս-

տեսան մահանել։ Միտքն հզօր է, այլ սէրն անկարող է։ Ո՜վ օրհնեալ անկարողութիւն, ամենակարող անկարողութիւն՝ որպիսին է Աստուծոյ կարողութիւնը։

## ԿԵԱՆՔԻՆ ԱՄԵՆԱՄԵԾ ԴԱՍԸ

Խաչին նայելով կ'ուսանինք ամենամեծ դասը կեանքին. կ'սորվինք հաւատալ, կ'ըմբռնենք թէ ինչ է հաւատքը։ Ո՛հ, խաչին մօտիկ միայն կ'համոզուինք թէ մեր հոգեւոր փրկութիւնը Քրիստոս է, մի միայն Քրիստոս. թէ նոյն իսկ մեր բոլոր բարութիւնն ու արդարութիւնն աղտեղի լաթի մը պէս պիղծ են առաջի Աստուծոյ։ Հոն միայն կ'խոստովանինք թէ մենք չենք փրկուած մինչեւ անգամ այն սիրով, զոր մենք կ'տածենք, այլ այն մեծ Սիրով, որուն կ'հաւատանք։ Մենք չենք ներուած այն բարութեան զոհով, զոր մենք կ'ընենք, հապա այն Զոհին միջոցով, որուն կ'յուսանք ու կ'ապաւինինք։ Թէ՝ վերջապէս, մենք չենք արդարանար այն գործքերով, զորս մենք կ'կատարենք, այլ այն Գործքով, զոր Քրիստոս Ինք գործեց խաչին վրայ։ Ո՛չ, ա՛լ չենք վաստկիր, չենք յուսար մեզի, այլ կ'հաւատանք Անոր անձին։

Այո, կ'սորվինք թէ հաւատքն է ամենամեծ առաքինութիւնը, հաւատքն է կատարելութիւնն ու ճշմարիտ բարութիւնը։ Չէ թէ մեր անձնական արդարութիւնը՝ այլ ՅՈՅՍՆ Անոր արդարութեան վրայ։ Չէ թէ մեր իսկ սէրը՝ բայց ՎՍՏԱՀՈՒԹԻՒՆՆ Անոր սիրոյն վրայ։ Ահա այս է հաւատքը, որ կ'արդարացնէ, որ փրկութիւն կ'գործէ, որ նկարագիրը կ'ազնուացնէ, կեանքը կ'անմահացնէ։ Հաւա՛տք, Պ. արհամարհողներ, հաւատքն յարաբերութեան մէջ կ'դնէ հաւատացեալը Աստուծոյ հետ, բոլոր բարութեան Աղբիւրին հետ։ Հաւատքը կ'բանէ զՔրիստոս եւ իրենը կ'ընէ զԱնիկա Իր բոլոր կատարելութեամբ։ Հաւատքն այն ջրանցքն է, կամ,

այն կամուրջը, որուն վրայէն թշուառ, անկեալ մարդը կ'քալէ, կ'երթայ, կ'իյնայ Աստուծոյ ծոցին մէջ։ Այս փրկարար հաւատքը խաչին կ'ներշնչէ մեր անհաւատ հոգիին։

## ՄԻԱԿ ԱՊԱՍՏԱՆԱՐԱՆԸ

Երկրի վրայ մեր միակ ու ապահով ապաստանարանն է Քրիստոսի խաչը, կամ, ի՛նչ որ կ'հասկնանք խաչին նշանով։ Աշխարհ ալեծուփ ծով մ'է իր փորձութեամբ ու իր ցաւերով։ Ա՛հ, երբ մեր հոգիներ նաւաբեկութեան կ'հանդիպին, կուգանք, կ'խարսխուինք այն անշարժ Վէմին վրայ, կ'փաթթուինք բարձրացող խաչին։ Երբ մեր խիղճերէն տանջուած՝ կ'փախչինք հալածական, ուրիշ տեղ չունինք ապաստանելու՝ բայց միայն խաչին շուքին տակ։ Երբ մեր հոգեւոր պայքարին մէջ զարնուած՝ խոց, վիրաւոր կ'իյնանք, ուրիշ տեղ չենք գտներ սպեղանի, բայց միայն խաչին վրայ, ուսկէ կ'հոսի բուժիչ բալասանը։ Խաչին թեւերուն ներքեւ կ'ծածկուինք, ու ազատ կ'մնանք թռչող հարուածներէն, ու այն ամէն մահացու նետերէն, զորս Սատանան ու աշխարհ կ'ուղղեն մեր կուրծքին։ Աշխարհ «Յոյս չի կա՛յ» կ'հծծէ։ Խղճմտանքը կ'դատապարտէ մեզ։ Ո՛հ, հոգւոյ փրկութեան համար ո՞ւր կրնանք դիմել, ո՞ւր կայ յոյս, ո՞ւր կայ արդարացում, ընդունելութիւն, ողորմութիւն, շնորհք, հաշտութիւն, խաղաղութիւն, գութ, սէր։ Ո՞ւր կայ, ըսէ՛ք, բայց եթէ խաչին վրայ, որ կ'ներկայացնէ զենուած Գառը, Աստուծոյ պատարագը, որմէ թափուած վարդակարմիր արիւնը կատարեալ քաւութիւն է ու անկասկածելի առհաւատչեայ՝ թէ Հօրը գիրկը բաց է մեզի համար, որ դեռ որդիներ ենք մենք անարժաններս, մենք կորսուածներս, մենք պիղծերս։ Հոն միայն, խաչին քով կրնանք համարձակ աղաղակել — «Ո՞վ է որ կ'դատապարտէ մեզ, Աստուած է որ կ'ար-

դարացնէ» . — «Ա՛լ դատապարտութիւն չի կայ անոնց, որ են ի Քրիստոս Յիսուս» ։

ՄԵՐ ԴԻՐՔՆ ՀԱՆԴԷՊ ԱՇԽԱՐՀԻ

Աշխարհի մարմնական աւերիչ զօրութեան դէմ մէկ անվտանգ դիրք կայ, դիրք մը՝ զոր Պօղոս առաքեալ բռնած էր իր կեանքի փոթորկալից ասպարէզին մէջ ։ Իրեն համար առանձնօք աշխարհը կար միայն . դրամն ու հաճոյքն էին իր «ամէնը յամենայնի» ։ Այլ յետոյ ոչինչ կ'արժէին անոնք ։ Ինք, իր իսկ ոճով, «մեռած էր անոնց» ։ Վասն զի նա իր դիրքը փոխած էր ։ Իրեն ու աշխարհի միջեւ խաչը կար, որուն արձակած լուսով կ'նայէր դրամին, մարմինին ու, մէկ խօսքով, նիւթին, եւ կ'տեսնէր զանոնք իրենց իսկական վիճակին մէջ ։ Նա չէր կենար դէմ յանդիման աշխարհի, այլ երեսը դարձուցած էր խաչին, որուն ետեւ ձգած ու սքօղած էր աշխարհի փայլն ու մարմնաւոր ցանկութիւնը ։

Խաչին արտայայտած փառքն կ'նսեմացնէ բոլոր երկրի գեղեցկութիւնը ։ Անոր ցայտած սէրը կ'ընկղմէ, կ'ոչնչացնէ բոլոր մարդոց սէրը ։ Խաչին պատուանդանին տակ կ'լինայ ամէն ի՛նչ որ ցանկալի է աչաց ։ Հոն կայնէ միշտ, ուր խաչը քու եւ աշխարհի միջեւ կայնած է, եւ բոլոր մոլորցնող, հրապուրող իրեր պիտի կորսնցնեն իրենց ոյժը ։ Կեցի՛ր հոն, աշխարհը ետիդ ձգած՝ եւ անարդել նայէ խաչին ։ Յայնժամ կղկղանքի պիտի փոխուի ոսկին, յայնժամ պիտի գտնես թէ ո՛րն է ճշմարիտ գանձը, ո՛րն է իրական կեանքը ։ Ուրիշ առարկայի չի նայելու, չի յափշտակուելու համար պէտք է նայիլ Քրիստոսի խաչին ։ Եթէ ոչ՝ թէ որ աչքդ ալ կուրցնես, զուր է, դարձեալ պիտի բռնուիս աշխարհային ցանկութեան ոսկեզօծեալ թակարդներէն ։

## ԱՄԵՆԱՄԵԾ ԲԱՆԸ ԱՇԽԱՐՀԻ ՄԷՋ

Ըսուած է թէ աշխարհի ամենամեծ բանը սէրն է։ Շատ շքեղ բաներ կան։ Սէրն է մեծագոյնը։ Սիրոյ բազում օրինակներ կ'գտնենք պատմութեան մէջ, սակայն ո՛չ ուրեք կարելի է գտնել սիրոյ ամենամեծ օրինակը, բայց միայն խաչին վրայ։ Ու եթէ աշխարհի ամենամեծ ու ամենագեղեցիկ բանը սէրն է, այդ սիրոյ ամենէն շողշողունը, ամենէն փառայեղը դրոշմուած է խաչին վրայ։ Անգլիոյ Թագուհւոյն թագին մեծագոյն քարը ցուցադրուած է Լոնտոնի մէկ թանգարանին — Լընտըն Թաուըրի — մէջ։ Արեւին չափ ճաճանչներ ունի այդ գրեթէ հաւկթաչափ զմրուխտը։ Այլ Աստուած երկինքի բոլոր ճոխութեանց ամենէն թանկագինը, ամենէն շքեղը, Իր թագին ամենէն խոշոր ադամանդը, Իր սրտին ամենէն անկշռելի, անհուն ու ամենագեղեցիկ Սէրը խաչին վրայ գամեց ի տես եւ ի հիացումն տիեզերքին։

## ԱՍՏՈՒԱԾ ՍԷՐ Է

Ո՛վ դուք, որ չէք ճանչնար զԱստուած, կամ եթէ կ'ճանչնաք՝ չէ այն յայտնուած Աստուածը — խաչին Աստուածը։ Կ'ուզէ՞ք տեսնել զԱնիկա, որուն չի պիտի գտնէք յարմարագոյն անուն մը՝ բայց միայն ԱՍՏՈՒԱԾ։ Կ'ուզէ՞ք հաւատալ Անոր։ Գացէք խաչին մօտ, մի՛ արհամարհէք զայն։ Եթէ հպիք Անոր, որ խաչին գամուած է, կ'հպիք Աստուծոյ, կ'դպչիք Աստուծոյ սրտին։ Ո՛վ թերահաւատներ, շօշափեցէք Անոր խոցուած կողը, եւ իսկոյն պիտի գոչէք, «Իմ Տէրս եւ իմ Աստուածս»։ Ո՞վ է Աստուած զոր կ'պաշտենք, ի՞նչ է Աստուած։ Ամենէն յուզիչ պատասխանը խաչէն կու գայ։ Բնութիւնն իր բոլոր փթթումներով կ'պատասխանէ թէ «Աստուած գեղեցիկ է»։ Երկինքն իր լուսեղէն փառքով կ'գոչէ՝ «Աստուած իմաստուն է»։ Ովկիանոսն իր խորունկ անդունդներովն ու անծայրածիր տարածութեամբ կ'գոռայ՝

«Աստուած անհուն է»։ Ապառաժները քակող բռնաշունչ փոթորիկներ կ'մռնչեն «Աստուած ահաւոր է»։ Առաւօտեան հեզիկ շաղերն ու տուընջեան մեղմիկ տարափներ կ'մրմնջեն՝ «Աստուած բարի է»։ Արեւն իր հզօր ճառագայթներով կ'հռչակէ՝ «Աստուած լոյս է»։ Միայն խաչը, օ՛հ, լսեցէք անոր ձայնը, որ նուագէն անոյշ է, երաժշտութենէն աւելի յափշտակիչ. խաչը կ'գեղերգէ՝ «ԱՍՏՈՒԱԾ ՍԷՐ Է»։

## Ո՞ՒՐ ԿԱՆԳՆԵԼՈՒ Է ԽԱՉԸ

Քանի որ խաչն այսքան վսեմ յայտնութիւններ կ'ընէ, ուրեմն կանգնեցէ՛ք զայն ձեր սրտերուն ու ձեր հոգիներուն մէջ, եւ թող այն ըլլայ ներշնչութիւնը ձեր բոլոր կարողութեանց, ձեր բոլոր խօսքերուն ու գործքերուն, ձեր բոլոր կեանքին։ Ապրեցէք անոր մօտ, ու անոր ներքեւ. քանզի շնորհքը, սէրն ու ողորմութիւնը կ'արտափայլին անոր շուրջը։ Բարոյական զօրութիւնն անկէ կ'բղխի։ Մի՛ բաժնուիք խաչէն։ Կառչեցէք անոր, ու հոգեւոր երկիւղի եւ մահուան ալիքներ չի պիտի համնին ձեզի։ Ցաւեր ու ձախորդութիւնք, եւ կեանքին բոլոր բարոյական յուսախաբութիւնք չի պիտի կործանեն ձեր անձերը։ Աղքատութեան մէջ հոգւով հարուստ պիտի ըլլաք, ու տկարութեան մէջ՝ ուժեղ։ Նայեցէք միշտ խաչին, ու կեանքի ընթացքին մէջ դեռ հազարաւոր նոր նշանակութիւններ պիտի գտնէք անոր վրայ։ Նորանոր հոգեւոր լոյսեր ու յայտնութիւններ պիտի ընդունիք անկէ։ Անոր վրայ քանդակուած սէրն հետզհետէ պիտի երեւի ձեզ աւելի պայծառ, աւելի յստակ, աւելի խորունկ, աւելի ճշմարիտ ու իրական, աւելի գեղեցիկ ու գգլխիչ, աւելի զօրեղ ու բարոյապէս աւելի յաղթող։

Այս պիտի ըլլայ մեր փորձառութիւնը՝ ոչ միայն հոս, այլ հոն՝ անդին մահուան շուքի հովտէն, գետին միւս ափունքին վրայ, ուր՝ Աստուած կ'ըսէ թէ մենք նորէն

*պիտի հանդիպինք միմեանց, պիտի ողջագուրենք զիրար ու այն ամէնը՝ որ խաչը կանգնեցին իրենց կեանքին մէջ ու ապրեցան անոր հովանիին տակ, որոնց իւրաքանչիւրին բերնէն միայն մէկ պարծանքի խօսք լսուեցաւ երկրի վրայ — **«Այլ ինձ քա՛ւ լիցի պարծիլ՝ բայց միայն ի խաչն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։***



# ՑԱՆԿ

---



